


# ԿԵՍԴԱՐԵՂ

Ն. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
Նախագահության նախագահ

Ամեն մի ժողովրդի կյանքում լինում են պատմական բախտորոշ իրադարձություններ, որոնք հավիտյան դրոշմվում են նրա սրտում, դառնում այդ ժողովրդի հետագա պատմության հավերժ ուղեցույցը:

Հազարամյակների պատմություն ունեցող հայ ժողովրդի համար այդպես բախտորոշ եղավ 1920 թվականը, երբ ճակատագրի նժարի վրա էր դրվել նրա պատիվը, բախտը և անգամ ֆիզիկական գոյությունը: Եվ որքան 1920 թվականը ողբերգական էր մեր ժողովրդի համար, նույնքան էլ վսեմ էր նոյեմբերի 29-ի բախտորոշ հաղթանակով, սխրալի մի հաղթանակ, որն ապացուցեց հայ ժողովրդի հոգու թարմությունն ու ուժի մեծությունը, նրա իմաստուն հեռատեսությունն ու պայծառ ապագայի նկատմամբ աներեր հավատը:

Նոյեմբերի 29-ը Հոկտեմբերյան աշխարհացունց հեղափոխության արձագանքն ու լենինյան անմահ գաղափարների հաղթանակի շեփորումն էր մեր լեռնաշխարհում, որն Արևելյան Հայաստանի հողում իրականություն դարձրեց ազատության, անկախության, իր բախտն ու ճակատագիրը ազատ տնօրինելու մեր ժողովրդի դարավոր երազանքը: Այդ օրվանից սկսվեց մեր ազգային վերածնունդը, մեր դարավոր պատմության ամենաբեղուն շրջանը, երբ ոչ մի օտար նվաճող այլևս չհանդգնեց խախտել Սովետական Հայաստանի պետական սահմանը, ոչ մի գնդակ չսուրաց Հայաստանի վրա և ոչ մի քար չընկավ մեր կոթողներից:

Բայց նորաստեղծ սովետական իշխանությունը մեր հանրապետությունում չափազանց ծանր ժառանգություն ստացավ. ժողովրդական տնտեսությունը ծայրահեղ քայքայված էր, սովն ու համաճարակները մոլեգնում էին, բնակչությունը ամենաանհրաժեշտ ապրանքների սուր կարիք ուներ: Այդ ծանր պայմաններում, Սովետական Ռուսաստանի նյութական ու բարոյական անշահախնդիր օգնության հետ, Հայաստանում սոցիալիստական հասարակարգի կառուցման համար կենսական նշանակություն ունեցան սովետական ազատ ու իրավահավասար ժողովուրդների դաշինքն ու եղբայրական համագործակցությունը: Նման համագործակցության փայլուն օրինակ էր հանդիսանում Ռուսաստանյան Ֆեդերացիան, որի փորձն ընդօրինակում էին Անդրկովկասի ժողովուրդները: Եվ պատահական չէր, որ 1922 թվականին, Անդրկովկասի Սովետական ե-



ՓԱՅՐԱԿԱՆ ԴԱՇԻՆՔՈՒՄ

րեք հանրապետությունները՝ Հայաստանը, Վրաստանը և Ադրբեջանը, միավորվելով կազմեցին Անդրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը (Անդրֆեդերացիա): Նույն թվականի դեկտեմբերի 30-ին, սոցիալիստական բազմազգ պետության ստեղծման մեծագույն երախտավոր Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, Սովետների համամիութենական առաջին համագումարում ընդունվեց երկու պատմական փաստաթուղթ՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն ստեղծելու մասին Դեկլարացիան և Պայմանագիրը: Կամավոր այդ միության մեջ Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի և Բելոռուսիայի հետ մտավ նաև Անդրֆեդերացիան:

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը Հոկտեմբերյան Մեծ հեղափոխության ամենամեծ նվաճումներից մեկն էր, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը աշխարհի մեկ վեցերորդ մասում, որը ՍՍՀՄ ազգերի միջև ապահովեց աննախադեպ բարեկամություն ու համագործակցությունը, բոլոր ժողովուրդների տնտեսական ու մշակութային զարգացումը: ՍՍՀ Միությունը ժողովուրդների ինտերնացիոնալ և ազգային միավորման նոր ձև էր, պետական կազմակերպման այն ձևը, որը երաշխավորում է ամբողջ Միության և առանձին ազգային հանրապետությունների շահերի ու նպատակների զուգակցումը, նրանց իսկական հավասարությունն ու անկախությունը:

1924 թվականին կամավոր կերպով ՍՍՀՄ-ի մեջ մտան Ուզբեկական և Թուրքմենական, 1929 թվականին՝ Տաջիկական, իսկ 1936 թվականին Կիրգիզական և Ղազախական հանրապետությունները: Նույն այդ թվականին Հայաստանը, Ադրբեջանը և Վրաստանը ՍՍՀՄ կազմի մեջ մտան իբրև միութենական առանձին հանրապետություններ:

Եվ այսպես, ՍՍՀՄ-ի մեջ համախմբվեցին պատմական տարբեր ճակատագիր ունեցող մեծ և փոքր ժողովուրդներ, որոնց միավորում էր հոգևոր ու նյութական բարգավաճման, Հոկտեմբերի նվաճումների պաշտպանման ու ամրապնդման, մարդկության երազած սոցիալիստական հասարակարգի կառուցման միասնական շահը:

Եվ եթե այսօր գոյատևում է երկիր Հայաստանը՝ իր խաղաղ ու պայծառ ներկայով և առավել հրաշալի գալիքով, ապա միմիայն շնորհիվ այն բանի, որ նա անբաժան ու իրավահավասար անդամն է այն եղբայրական հզոր դաշինքի, որ կոչվում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միություն:

*Նկ. ԽԱՉԱՏՈՒՐ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ*



# ՍՈՎԵՏԱԿԱՆ

Վ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ

Մեր երկրում ամեն ինչ նոր էր ստեղծվում: Երիտասարդ սովետական իշխանությանը անհրաժեշտ էր նաև պետական նոր գերբ, այնպիսին, որ դեռ երբեք չէր եղել՝ աշխարհում բանվորների և գյուղացիների առաջին պետության գերբը:

1918 թվականի սկզբներին ինձ մոտ բերին գերբի նկարը: Ես այն անմիջապես տարա Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակը: Այնտեղ էին նաև Յակով Միխայլովիչ Սվերդլովը, Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկին և մի խումբ այլ ընկերներ: Նկարը դրի սեղանին, Լենինի դիմաց:

— Այս ի՞նչ է: Գե՞րբ: Հետաքրքիր է,— ասաց նա ու խոնարհվելով նկարի վրա, սկսեց ուսումնասիրել:

Բոլորը շրջապատեցին Վլադիմիր Իլյիչին և սկսեցին դիտել այն:

Կարմիր ֆոնի վրա փայլփլում էին պայծառ այգաբացի առաջին շողերը, շրջափակված ցորենի խրձերով, ներսում խաչաձևվել էին մուրճն ու մանգաղը, իսկ ցորենի խրձերից դեպի արևի ճառագայթներն էր ուղղված սուրը:

— Հետաքրքիր է...— ասաց Վլադիմիր Իլյիչը,— մտահղացումը վատ չէ, բայց ինչո՞ւ անպայման սուր,— ու նայեց մեզ,— մենք պայքարում ենք, մենք կռվում ենք և կկռվենք, քանի դեռ չենք ամրապնդել պրոլետարական հասարակարգը, դուրս չենք վռնդել մեր երկրից սպիտակգվարդիականներին ու օտարերկրյա զավթիչներին: Բայց բռնությունը մեզ մոտ երբեք չպետք է լինի մշտական ուղեկից: Պատերազմներ մեզ պետք չեն: Ոչ թե հարձակվում ենք մենք, այլ պաշտպանվում թշնամիներից: Մեր կռիվը դիմադրողական է, և սուրը մեզ համար խորհրդանիշ չէ: Այն պետք է ամուր պահենք մեր ձեռքերում, քանի դեռ պրոլետարական պետությունը պաշտպանության կարիք է զգում, քանի դեռ թշնամիներ ունենք, մեզ վրա հարձակվում են, վտանգ է սպառնում մեր երկրին, բայց դա չի նշանակում, որ միշտ այդպես կլինի... Երբ ամբողջ աշխարհում կիրականանա ժողովուրդների մեծ եղբայրությունը, մեզ այլևս սուր պետք չի գա... Մեր սոցիալիստական պետության գերբի վրայից պետք է հեռացնել սուրը,— և կարմիր մատիտով խաչ քաշեց սրի վրա,— իսկ մնացածը լավ է: Եկեք հաստատենք գերբը, հետո կնայենք ավելի մանրամասն և ժողկոմսովետում կքննարկենք: Պետք է այդ ամենը շատ արագ կատարվի...— և նա ստորագրեց նկարի տակ:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆ

ՍԱՐՄԵՆ

Անուն ունի ոսկետառ՝
Սովետական Միություն,
Կմնա նա դարեդար,
Մասիսի պես հաստատուն:

Այդ հիսնամյա միության
Ծննդյան տոնն է այսօր,
Թող մեր երգերը բնդան,
Լինի շքերը փառավոր:

Թող մեր դրոշը փայլի,
Փողփողա վառ ու պայծառ,
Ու թող խինդով լիուլի
Լցվի աշխարհը անծայր:

Անուն ունի ոսկետառ՝
Սովետական Միություն,
Կապրի նա միշտ, դարեդար,
Ինչպես Մասիս հաստատուն:

# ԳԵՐԲԸ

Նկ. ԽԱՉԱՏՈՒՐ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ

Նկարիչը, որ ուշադիր լսել էր Լենինի բոլոր ասածները, խոստացավ կարճ ժամանակում բերել գերբի նոր նկարը:

Երբ նկարիչը երկրորդ անգամ եկավ Վլադիմիր Իլյիչի մոտ, այնտեղ նստած էր ճանաչված քանդակագործ Անդրեևը: Լենինը աշխատում էր, ընդունում այցելուների, իսկ քանդակագործը անկյունում լուռ նըստած գծանկարներ էր անում ծոցատետրում: Նա պատրաստվում էր քանդակել Վլադիմիր Իլյիչի կիսանդրին:

Սկսեցին դիտել գերբը: Արդեն սուրը չկար, և գերբը պսակված էր աստղով: Բոլորի հետ նայում էր նաև Անդրեևը:

— Ձեր կարծիքով, ինչպիսի՞ն է,— նրան դիմեց Վլադիմիր Իլյիչը:

— Շատ լավն է, բայց էլի ինչ-որ բան...

Վերցնելով մատիտը, Անդրեևը, նկարչի թույլտվությամբ, հենց տեղում սկսեց գերբը վերանկարել: Նախ խրձերը խտացրեց, արևի ճառագայթները ավելի ընդգծեց՝ դարձնելով միանգամայն արտահայտիչ: Աստղը ընդունեց խիստ հավասարաչափ հնգաթև տեսք, և լոզունգը՝ «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք», ավելի պարզ էր ընթերցվում:

Դա Ռուսական Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության գերբի նախագիծն էր, որը Վլադիմիր Իլյիչի դիտողություններով կատարելագործվելուց հետո, հաստատվեց 1918 թվականին:

Այն հասկանալի էր բոլոր աշխատավորներին, որոնք թշնամիներից պաշտպանել էին հարազատ սովետական իշխանությունը:

Այժմ մեր երկիրը դարձել է սովետական սոցիալիստական հանրապետությունների հզոր միություն:

Սովետական Միության գերբի վրա նույնպես կա և՛ մուրճ ու մանգաղ, և՛ ոսկե խրձեր, և՛ պայծառ ճառագայթներով արև:

Գերբ ունեն նաև հանրապետություններից յուրաքանչյուրը: Արևը գերբերի վրա ծագում է լեռների ձյունաթույր կատարների ետևից կամ ծովերի պռնկից:

Յուրաքանչյուր գերբի վրա կա. «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը և աշխարհում առաջին աշխատավորական պետության խորհրդանիշը՝ մուրճ ու մանգաղ:



# ՄԵՐ ԴՐՈՇԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Դրոշիդ վրա,
Իմ մա՛յր Հայաստան,
Մենք չենք նկարել
Աստղեր ու արև:
Մենք արյան գույն ենք
Նվիրել նրան,
Կապույտ երիզ ենք
Վրան նկարել:
Եվ այդ կապույտը
Ճանապարհ է լայն.
Նա մեր պատմության
Սրտից է գալիս,
Եվ մեր ներկայի
Կանչով հաղթական
Մեր երազներին
Ճամփա է տալիս:

Այդ կապույտը ջինջ
Լիճն է Սևանա,
Մեր լեռնաշխարհի
Երկինքն է խաղաղ,
Մեր մանուկների
Անուրջն է մաքուր,
Եվ մեր ծովերի
Ջովությունն է պաղ:
Եվ այդ կապույտը
Մաքառումն է մեր,
Մեր երգն է՝ լցված
Հավատի շնչով,
Որ թևին առած՝
Տանում է առաջ
Մեզ՝ կարմի՜ր, կարմի՜ր
Օրերի միջով:



## ՄԻԱՅՆԱԿ ԾԱՌԸ

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

Մի քարքարոտ ճողում,
Ջրի կարոտ ճողում,
Հողմ ու քամու դիմաց
Մի կենտ ծառ էր կանգնած:

Հողմ ու քամու դիմաց
Ինքը՝ մենակ ու թույլ,
Մեջքը՝ կարճ ու ծռված,
Տեսքը՝ խեղճ ու տխուր:

Բայց թե լինե՜ր, լինե՜ր,
Շուրջը անտառ լինե՜ր,
Իր թիկունքին, կողքին
Այգի ու ծառ լինե՜ր,—

Ճյուղը-ճյուղի տված՝
Կդառնային մի պատ,
Հողմ ու քամու դիմաց
Կկանգնեին հպարտ:

Կխեղճանար քամին,
Հողմը կխեղճանար,
Ողջույն կտար ծառին,
Կանցներ ու կգնար...



## ԼԻՏՎԱԿԱՆ

Լիտվան հաճախ անվանում են սաթի երկիր: Ջրասույզ եղած նախնադարյան անտառների ծառերից հոսած խեժը քարացել է, և Բալթիկ ծովի ալիքներն այսօր ափ են նետում արևի շողի նման պայծառ ու թափանցիկ սաթի կտորներ: Լեգենդը պատմում է, որ սաթը դա ծովերի տիրակալ աստվածուհի Յուրատեի քարացած արցունքներն են: Երկուսն էլ գեղեցիկ են՝ թե՛ լեգենդը, թե՛ իրականությունը, և բոլորովին պատահական չէ, որ արևաշող սաթը վաղուց ի վեր դարձել է Լիտվայի և նրա ժողովրդի հոգու, մաքուր ու գեղեցիկ երազանքների խորհրդանիշ:

Արևմուտքից Լիտվայի ափերը ողողում են Բալթիկ ծովի ջրերը: Սոճու անտառները համարյա մինչև ծով են հասնում, և մոխրագույն ջրի ու կանաչ անտառի միջև հարյուրավոր կիլոմետրեր ձգվում է սպիտակ ավազի շերտը: Որքան խորանում ենք երկրում, այնքան անտառները փարթամ են դառնում և համատարած կանաչի մեջ հայելիների նման շողշողում են 2800 մեծ ու փոքր լճեր: Քայլենք այդ լճի ափով, հնադարյան ամրոցների ավերակների կողքով, անտառամիջյան նեղլիկ արահետներով, որոնց խաչմերուկներում հնից մնացել են փայտյա զանգակատներ՝ փայտյա արձանիկներով, մտնենք լիտվական գյուղերը, որտեղ տների ճակատների փայտյա զարդաքանդակները պատմում են հին վարպետների ճարտարության մասին, և մեր աչքերի առջև կպատկերանա Լիտվան այնպես, ինչպես նա եղել է դարեր ի վեր: Բայց անտառամիջյան արահետները այսօր ընդհատվում են երկաթուղիներով ու ժամանակակից ասֆալտապատ լայն խճուղիներով, որոնք տանում են դեպի Կլայպեդա ու մյուս ծովային նավահանգիստները, Լիտվայի խոշոր արդյունաբերական կենտրոնները, դեպի մեծ քաղաքներ Կաունասը և մայրաքաղաք Վիլնյուսը: Հինն ու նորը Լիտվայում կողք-կողքի են ամեն քայլափոխի: Հինը պատմում է լիտվա-




# Ս Ս Հ

ցի ժողովրդի հարուստ, բայց ծանր ու դժվարին անցյալի մասին: Իսկ նորը՝ Սովետական Լիտվան է, մեկը տասնհինգ եղբայրական հանրապետություններից, իր բարձր զարգացած գյուղատնտեսությամբ, արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններով, իր նոր արվեստով ու մշակույթով, պայծառ ու արևաշող իր սաթի նման:

*ՄԱՅՐՈՆԻՍ*

## ԵՐԳԻ ՏՈՆԻՆ

Երգե՛ր, հնչեցե՛ք դաշն ու տիրական,
Ջեզնով գուրգուրե՛ք հողը հայրենի,
Եվ զորանալով բյուր հազար անգամ,
Եվ միանալով հնչյուն-հնչյունի,
Հյուսվե՛ք սրտե-սիրտ ու բերնե-բերան,
Ծիածա՛ն կապեք Լիտվայի վրա,
Երգե՛ր հայրենի:

Դո՛ւ, ժողովրդի սրտից քամված ե՛րգ,
Երբ անհավասար մարտերում ընկան
Հսկաներն անգամ, դու՝ մեղմ, դյուրաբեկ,
Դու փրկվեցիր, ապրեցիր սակայն,
Ապրեցիր դաշտում, արտում, խրճիթում,
Ապրեցիր համառ, թեև գոռ մարտում
Հերոսներն ընկան:

Ե՛րգ, դու մեզ դարեր զորավիգ եղար,
Մեր մահվան ժամին գոչեցիր «ապրե՛լ»:
Երբ զավակներիդ՝ երազի տեղակ,
Խոր, հավերժական քունն էր պարուրել,
Դու՝ արթուն, թեքված օրորոցներին,
Մեծացրիր մանկանց, նորից հույս բերիր,
Սովորեցրիր ապրել:

## ԳԱՐՈՒՆ

Գարնան արևն է երկինքը առնում,
Գարնան փայփայող, փայող արև.
Ժիր արտույտները թևերն են բանում
Ու պտույտ-պտույտ ձգվում վերև:

Գարո՛ւն է, գարո՛ւն... Հովերը զարթնած
Համբույրով կյանք են տալիս հանդին,
Խայտո՛ւմ են, խնդո՛ւմ ծաղիկ ու կանաչ,
Գարնան պսակ են հյուսում դաշտին:

Արև է չորս կողմ, ու հույս է չորս կողմ,
Ու սեր է շնչում տողը երգիս:
Ուզում եմ գրկել աշխարհն ամբողջ,
Հարազատի պես սեղմել կրծքիս:

*Թարգմ. ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆԻ*



## ՊԱՐՏԻԶԱՆԻ ՊԱՏՄԱԾԸ

*ՄԻԿՈԼԱՍ ՍԼՈՒՑԿԻՍ*

Այս դեպքը պատահել է քառասուներեք թվականին:

Պատերազմում չգիտես, թե ինչ է սպասում քեզ վաղը: Ավելի քիչ գիտես, թե ինչ կլինի քեզ հետ վաղը չէ մյուս օրը: Մենք բոլորովին չէինք պատրաստվում մտնել լատվիական անտառները: Բայց ստիպված եղանք: Մեզ շրջապատեց հակառակորդի ուժեղ ջոկատը: Մերոնցից միայն քչերին հաջողվեց դուրս գալ շրջապատումից: Մենք ընկանք բոլորովին անծանոթ վայրեր:

Հարկավոր էր փնտրել մերոնց մոտ տանող ճա-

նապարհը։ Իսկ թե որտե՞ղ էին նրանք այժմ՝ հայտնի չէր։

Մենք ճեղքում ու գնում էինք խիտ թփուտները, կողմնորոշվելով միայն արևով և աստղերով։ Մի անգամ մոլորվեցինք ճահճուտում։ Մինչև այսօր չեմ կարողանում հասկանալ, թե ինչպես դուրս պրծանք այդ սարսափելի վայրից։

Վերջապես դուրս եկանք գյուղից հեռու կանգնած մի խուտորի մոտ։

Կեսօր էր։ Երկնքում լողում էին մանր, լուսաշող ամպի կտորներ։ Արևն այնպես էր այրում, որ մեր խոնավացած շորերից գոլորշի էր բարձրանում։ Մենք սկսեցինք զննել տունը։ Այն սպիտակ ծածկափեղկեր ուներ և թիթեղե տանիք։ Կողքին խըռնըրվել էին ինչ-որ շինություններ։ Խուտորը շրջափակված էր նոր, թարմ ցանկապատով։

— Է՜յ, տանտերե՛ր,— ձայն տվեց մեր հրամանատարը։

Որոշ ժամանակ խուտորում լռություն էր թագավորում։ Մենք նայում էինք երկար ամբարին, բնակելի տան բարձր ցեմենտե հիմքին։ Պարզ է՝ կուլակի դաստակերտ էր։

— Այստեղ կենդանի շունչ կա՞,— ավելի բարձր կանչեց հրամանատարը։— Որտե՞ղ է տանտերը։

Գոմի դուռը դանդաղորեն ճռռաց։ Դուրս եկավ լիքը, ամրակազմ մի մարդուկ՝ մինչև ծնկները քըշտած շալվարով։ Նա շփոթահար թարթում էր մանրիկ աչքերը, փոքրիկ խոզանակի նման բեղերը ցնցվում էին։

— Խմելու բա՛ն բեր։ Երկու օր է բերաններս կակաչի ցող էլ չի մտել,— դիմեց նրան հրամանատարը։

Տանտերը ուշադիր զննում էր մեզ։ Մեր տեսքը անհրապույր էր։ Նա ժխտականորեն թափահարեց գզգզված գլուխը և ոտքը քորեց։

— Չեմ հասկանում...— փնթփնթաց նա լատիշերեն։

## ԼԻՏՎԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

Նապաստակն էլ ձիուն կհաղթի, եթե գայլը նրան օգնի։

Կույր մկան համար նույնիսկ ճարպը անհամ է։

Ջրի մեջ ընկնողը չոր դուրս չի գա։

Շատ խոսողից ճիշտ բան քիչ կլսես։

Մեկ էլ նրա թիկունքում մի տարօրինակ արարած հայտնվեց։ Դա տասներկու-տասներեք տարեկան մի տղա էր, շատ շեկ, այս ու այն կողմ տնկված մազափնջերով։ Նրա հագին քաթանե վերնաշապիկ էր ու նույնանման քաթանե կեղտոտ անդրավարտիք։ Վիզը ձգելով նա հետաքրքրությամբ նայում էր մեզ։ Նրա նիհար, արևահարված դեմքը հանկարծ փայլեց։

— Նրանք ջուր են ուզում, քեռի՛... Ջո՛ւր,— ուրախ բացականչեց նա։

— Զա՛յն,— սաստեց նրան տանտերը։ Կկոցելով փոքրիկ, ծակող աչքերը, նա ձեռքի շարժումներով սկսեց մեզ բացատրել, որ խուտորում ջրհոր չկա, իսկ այնտեղ, դաշտում, աղբյուր է բխում։

Տղան անհայտացավ խրճիթում։ Մեկ վայրկյան հետո նա դուրս եկավ՝ ջրով դույլը ետևից քարշ տալով։ Ջուրը ցայտում էր այս ու այն կողմ, թափվում եզրերից, ծանր կաթիլներով ընկնում մոխրագույն փոշու մեջ։

Մենք լիքը լցնում էինք տափաշշերը և հաճույքով խմում։ Սառնորակ հեղուկը գլորվում էր մորուքի, վզի վրայով, հոսում էր քրտնքակալած վերնաշապիկի տակ։ Մենք շունչներս ետ էինք բերում ու նորից խմում։

Մաքուր, սառը ջրից մեր դեմքերը պարզվեցին։ Տղան մեզնից չէր հեռանում և ամբողջ ժամանակ լռելյայն մեր կողմն էր հրում դույլը։ Տանտերն էլ սիրտ առավ ու սկսեց բացատրել, որ գերմանացիները այս կողմերում չեն երևացել։

Համենայն դեպս շուրջը նայելով՝ մոտակայքում մարդ-մուրդ չկա՞, նա հրամանատարին մեկնեց հաց և ճարպի դեղին մի կտոր։

— Շնորհակալություն, տանտե՛ր,— ասաց հրամանատարը։— Իսկ չէի՞ր ասի՛ որն է ճանապարհը դեպի...

Եվ նա տվեց այն տեղի անունը, ուր մեզ հարկավոր էր հասնել։

Բեղավոր տանտերը թափահարում էր գլուխը, սեղմում ուսերը, աչքերը չռում։ Նա մեզ ինչ-որ բան էր բացատրում։ Եվ քանի դեռ նա բլբլացնում էր, մենք հասցրեցինք մեկ անգամ էլ լցնել տափաշշերը, խմել ու ծխել։

Հրաժեշտ տալիս տանտերը փորձեց ժպտալ, բայց, ինչպես երևում է, բեղերը նրան խանգարում էին։ Թվում էր, թե դրանք իսկական չէին, այլ կըպցրած։

Տղան նստած էր ցանկապատին, ճյուղառատ տանձենու տակ, և նայում էր մեր ետևից։ Հեռվից նա բոլորովին գունատ և նվազ էր թվում իր կտավե եր-

կար վերնաշապիկի մեջ: Նա բարձրացրեց ձեռքը և կախ ընկած թևքը թափահարեց: Այն ժամանակ հայտնվեց տանտերը՝ լիքը, կճմրերես, կախ ընկած հաստ ուսերով: Մենք տեսանք, թե ինչպես նա ճանկեց տղայի օձիքը և սկսեց քաշել նրան ցանկապատի վրայից: Տղան կառչում էր երկու ձեռքով, բայց տանտիրոջն ի վերջո հաջողվեց գետին գցել նրան:

— Է՜խ, նեղացնում են տղայքն,— ցավով ասաց հրամանատարը:— Երևի բատրակ է,— և կիտեց ճերմակ հոնքերը:

Մենք մտանք անտառ և քարշ էինք գալիս փափուկ փշատերևով ծածկված անտառային ճանապարհով: Ցրտում էր: Արևը թաքնվեց անտառի ետևում, և միայն նրա վերջին շողերն էին ոսկեզօծում եղևնիների կատարները: Մենք արդեն վաղուց պետք է դուրս եկած լինեինք խաչմերուկը: Բայց տարօրինակ բան՝ ճանապարհը ձգվում էր ուղիղ, առանց շրջադարձերի: Տանտիրոջ բացատրած նշաններից ոչ մեկը չէր երևում:

— Սա ի՞նչ բան է, հը՞,— մտախոհ ծոր տվեց հրամանատարը:— Պետք է որ ճանապարհից շեղված չլինենք:

Հանկարծ ինչ-որ տեղ թրխկաց կրակոցը: Նրա ետևից՝ հաջորդը: Հետո կրկին ամեն ինչ խաղաղվեց:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Երեկոն մոտենում էր: Անտառային ճահճում կոկռում էին գորտերը: Մենք գնում էինք ու գնում: Այնքան էինք հոգնել, որ մեզանից յուրաքանչյուրը կարողանում էր նայել միայն դիմացից գնացողի մեջքին: Մեջքը խոնավ էր ցողից ու քրտինքից:

Հանկարծ մեր ետևում ինչ-որ տեղ, մթության մեջ, լսվեց.

— Է՜յ, է՜յ:

Մանկական զնգուն ձայնը խզվեց: Մենք կանգ առանք: Մի քանի րոպե անց թփերի միջից դուրս լողաց խուտորի տղան: Բերանը լայն բացած՝ նա ծանրորեն շնչում էր և բռնում եղևնու ճյուղերից, որ վայր չընկնի: Թվում էր, թե նրա կտավե վերնաշապիկի տակ թռչուն է թպրտում՝ այնպես շնչակտուր էր եղել նա վազքից:

Շունչը ետ բերելով, նա սկսեց մեզ ինչ-որ բան բացատրել: Թափահարում էր ձեռքերը և ցույց տալիս դեպի արևմուտք: Մթնշաղը բավականին խտացել էր, սակայն մենք կարողանում էինք տարբերել նրա դեմքի կապտուցները: Նրա ձախ այտը ուռել էր:

— Մի՛ գնացեք այնտեղ... Մի՛ գնացեք:— Եվ նա քաշեց հրամանատարի ուսափոկից:— Տանտերը վազեց գերմանացիների մոտ: Տանտերը ձեզ չի սիրում: Դուք այնտե՛ղ գնացեք:— Եվ նա ձեռքով ցույց տվեց մեզ այլ ուղղություն:— Արա՛գ: Թե չէ կգան: Նրանք ձիերով են:

Նա երկար բացատրում էր, շփոթելով լատիշերեն և լիտվերեն բառերը, մինչև որ մենք հասկացանք նրան:

Ահա թե ինչու էին նրան այդպես ծեծել: Նա ուզեցել էր փրկել մեզ:

Որոշ ժամանակ նա քայլում էր մեր կողքից՝ ցույց տալով ճանապարհը: Մենք հնազանդորեն գնում էինք մեր ուղեկցի ետևից:

Անտառային խաղաղ մարգագետնում նա կանգ առավ: Սպիտակ մառախուղը փռվում էր ծվեն-ծվեն, և թվում էր՝ մենք լողում ենք նրա մեջ:

— Դու չե՞ս վախենում,— խուլ ձայնով հարցրեց հրամանատարը:

— Ո՛չ, ո՛չ,— հազիվ լսելի պատասխանեց տղան: Նա վախենում էր: Նա դողում էր ամբողջ մարմնով: Իսկ գուցե նա մրսո՞ւմ էր իր մի հատիկ վերնաշապիկի մեջ:

Մենք զույգ հրաժեշտ տվեցինք իրար, ինչպես և վայել է տղամարդկանց: Բոլորը հերթով սեղմեցին նրա ձեռքը: Նա ինչ-որ բանի մասին տաք-տաք խոսում էր, իսկ ծոցի մեջ, թվում էր, կրկին թպրտում է բռնված թռչունը:

— Արա՛գ, արա՛գ,— պնդում էր նա, հազիվ զսպելով լացը:

Եվ կարելի էր մտածել, որ նա խնդրում էր մեզ որքան կարելի է շուտ վերադառնալ հաղթանակով:

*Թարգմ. ԱՇՈՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆԻ*

## ԿՎԻՆՏԱ

### (Լիտվական խաղ)

Թիմը բաղկացած է 5 մարդուց, իսկ հրապարակի տարածությունը 10×10 մետր է: Հրապարակի յուրաքանչյուր անկյունում գծվում են 1,5 մ տրամագծով շրջաններ: Այդպիսի շրջան է գծվում նաև հրապարակի կենտրոնում: Խաղում են բասկետբոլի գնդակով: Խաղի սկզբին կենտրոնական շրջանում կանգնում է մի թիմի լավագույն խաղացողներից մեկը (ըստ վիճակահանության), իսկ անկյունի շրջանները զբաղեցնում են մյուս թիմի խաղացողները: Խաղի ընթացքում ավագը իրավունք ունի փոխարինել խաղացողներին:

Մեկը մյուսին գնդակ նետելով կամ դիպուկ հարվածով պետք է խաղից դուրս անել կենտրոնական խաղացողին (նետման ձևերը բասկետբոլային են): Խաղից դուրս եկածին փոխարինում է ուրիշ խաղացող (բոլոր խաղացողները պետք է լինեն կենտրոնում): Հաղթում է այն թիմը, որի խաղացողները ավելի երկար են մնում կենտրոնի շրջանում:





## ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ

Սովետական Միության յուրաքանչյուր հանրապետություն մի առանձնահատկություն ունի: Մեկը հռչակված է իր գետերով ու ծովերով, մյուսը՝ անտառներով, երրորդը՝ բարձր լեռներով: Ադրբեջանն ունի և՛ ծով ու գետեր, և՛ անտառներ ու բարձր լեռներ: Ի՞նչ ասես, որ բնությունը չի պարգևել այդ հանրապետությանը: Սակայն նրա գլխավոր հարստությունը խորը թաքնված է հողի տակ. դա սև ոսկին է՝ նավթը: Գուցե ա՞յդ պատճառով է, որ Ադրբեջանը անվանում են «Կրակների երկիր»: Մյուս օգտակար հանածոներից կա երկաթ, ալյումին, պղինձ, կապար, ցինկ, աղ:

Իսկ ինչքա՞ն բազմազան է Ադրբեջանի կենդանական աշխարհը: Լենքորանի հարթավայրում ձմեռում են անթիվ թռչուններ, Կզըլ-Աղչայի արգելանոցում բազմանում են հարյուր հազարավոր բադեր, սագեր, կարապներ, նույնիսկ ֆլամինգոներ ու հավալուսներ: Կասպից ծովում և գետերում, հատկապես Քռի մեջ, շատ կան ձկներ:




Ն. ՌԱՖԻԲԵՅԼԻ



*Մի դարբին նույն երկաթից երկու գութան պատրաստեց: Գութաններից մեկը մի գյուղացի գնեց և տարավ, իսկ մյուս գութանը ընկած մնաց դարբնոցի մի անկյունում: Դաշտում աշխատեցնելիս մի օր պոկվեց գութանի մաճը: Գյուղացին նոր մաճ դնելու համար գութանը առավ, բերեց դարբնի մոտ: Դարբնոցում գութանները հանդիպեցին իրար:*

*— Թանկագի՛նս, մեզ միևնույն երկաթից են ձուլել, ինչո՞ւ դու արծաթի պես փայլում ես, իսկ ես գնալով օր-օրի ժանգոտում եմ:*

digitised by A.R.A.R.@



# Ս Ս Հ

Հետաքրքիր և ուրախ առօրյայով են ապրում հանրապետության երեխաները: Նրանք բարեկամական կապի մեջ են մյուս հանրապետությունների և սոցիալիստական երկրների իրենց հասակակիցների հետ: Յու. Գագարինի անվան պիոներական պալատի մանկական «Ջուջալարի» («Ճուտիկներ») անսամբլը հաջողությամբ հանդես է եկել արտասահմանում:

Ադրբեջանի երեխաները, երբ հյուր են գալիս իրենց բարեկամները, նրանց տանում, ծանոթացնում են Բաքվի տեսարժան վայրերի հետ: Առաջին հերթին, իհարկե, նրանց տանում են Բաքվի 26 կոմիսարների հուշարձանի մոտ, պատմում խիզախ հեղափոխականների մասին: Հետո պատանի տանտերերը հյուրերին ուղեկցում են Ս. Մ. Կիրովի անվան զբոսայգի, որտեղից, ինչպես ափի մեջ, երևում է Բաքուն, պատմում են նոր կառուցված մետրոյի մասին, ապա տանում ու ցույց են տալիս իրենց մանկական երկաթուղին:




Գյուղացու գութանը ժպտալով պատասխանեց.

— Բարեկա՛մս, ես գնալու պահից մինչև այսօր մի օր պարապ ու անգործ չեմ մնացել: Աշխատել եմ անդադար, դրա համար էլ այսպես փայլում եմ: Իսկ դու այն օրվանից ընկել ու մնացել ես դարբնոցում. Ես արթնանում եմ ամեն առավոտ, գնում եմ հանդ ու աշխատում, իսկ դու քնում ես ու քնում: Դրա համար էլ ժանգոտում ես ու փչանում այդպես:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽՈՐԱՍՅԱՆԻ

# ԴՈՒՌԸ ԵԿԱԾԻՆ ՉԵՆ ՎՌՆԴԻ

Հ. ՋԵՅՆԱԼՈՎԱ

Սարսափելի ցուրտ էր, սառնամանիք: Սաստիկ ձյուն էր եկել այդ գիշեր, ծածկել սար ու դաշտ, լեռ ու կածան, բակ ու կտուր: Ծառերն էլ ձյան հաստ մուշտակներ էին հագել: Այդ դաժան սառնամանիքին մի փոքրիկ շնիկ էր թափառում փողոցներում: Պատսպարվելու, տաքանալու ապահով մի անկյուն էր փնտրում շնիկը:

Մութն ընկել էր արդեն, իսկ մթան հետ օրն ավելի է ցրտում... Փոքրիկ շնիկը մի բակ մտավ: Մուտքի աստիճանների տակ կուչ եկած հավի ճտեր կային: Շնիկին տեսնելուն պես՝ կչկչոցով ցրվեցին այս ու այն կողմ: Հավերի աղմուկն էլ բարձրացավ:

— Ծուղրուղո՜ւ... այս շնիկն ի՞նչ գործ ունի մեր հավաբնի մոտ,— ծղրտաց կատարը սուր, նիհար ու բարձրահասակ մի աքլոր և կտցահարելով շնիկին, դուրս արեց բակից:

Շնիկը սառած պոչը մրսած ոտքերին սեղմելով՝ էլի բակ մտավ... Պատշգամբի տակ ցածրիկ մի դուռ նկատեց: Դռան արանքով մի կերպ ներս մտավ: Ներսը տաք էր, հաճելի:

— Էլ ոչ մի տեղ չեմ գնա, այստեղ էլ կմնամ,— մտածեց շնիկը: Բայց էլի մի ձայն լսվեց հանկարծ.— Մա՜, մա՜, այս ո՞վ է փաթաթվել ոտքերիս:..

Շնիկը վախից նորից իրեն բակ նետեց: Նա ի՞նչ իմանար, որ դա ոչխարի գոմն է: Շնիկը գնաց ու երկար կանգնեց տան պատուհանի տակ: Տնից տաք ու համեղ կերակրի բույր էր գալիս: Շնիկը լիզեց դնչիկն ու ավելի մոտեցավ պատուհանին: Տաք տան մեջ, պատուհանի գոգին մուշ-մուշ ննջում էր կատուն: «Ինչ բախտավորն է, տեղը՝ տաք, փորը՝ կուշտ»,— շնիկը նախանձեց նրան: Հետո կատվի ուշադրությունը իր վրա ուղղելու համար, վրա պրծավ.

— Հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ...

Կատուն շնիկի ձայնը լսելուն պես՝ վեր թռավ, մոտեցավ իր ձագին, մազերը բիզ-բիզ կանգնեցրեց, ուռցրեց մեջքը, բեղերը շարժեց: Շնիկը հասկացավ, որ կատուն իրեն վռնդելու համար է այդպես անում և ցանկացավ հեռանալ բակից, բայց ահա դուռը բացվեց ու մի լավ տղա գետնից բարձրացրեց նրան.

— Վա՜յ, խե՛ղճ շնիկ, այդ ինչպե՞ս ես սառել: Երևի՝ նաև քաղցած ես... Ես հիմա քեզ կկերակրեմ, կտաքացնեմ... — հետո տղան հայացքը ուղղեց կատվին և ասաց.

— Դու ի՞նչ ես մեջքիդ մազերը ցցել, ի՞նչ ես արել բեղերդ, չգիտե՞ս, որ դուռը եկածին չեն վռնդի:

*Թարգմ. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*

# ՃԱՄՓԱ՛ ԲԱՑԵՔ

*Հ. ՀՈՒՍԵԻՆԶԱԴԵ*

Հայրենի հողն իմ անծայր
Դաշտեր ունի ու լեռներ,
Լճակներ՝ լույս ու պայծառ,
Գլգլացող աղբյուրներ:
Ամեն քարի սրտի մեջ
Հարազատներ կան քնած,
Քանի՛-քանի՛ երազներ
Ու անուրջներ կան քնած...
Գաղտնիքները քարերի
Դո՛ւք բացեք, ի՛մ մանուկներ,
Ինչ որ մենք չենք կարդացել,
Դո՛ւք կարդացեք, մանուկնե՛ր:

Աղբյուրի մոտ, ջրի մոտ
Եղնիկն ինչո՞ւ է վախում,
Կածանի մոտ քարքարոտ
Սիրտն ինչո՞ւ է բաբախում...
Ճնճղուկն արտում իր երգով
Ի՞նչ է ասում հասկերին,
Ի՞նչ է տանում հանդերով
Արագիլն իր թևերին.
Հեղեղն ինչո՞ւ մտավ ձոր,
Գետն ինչո՞ւ է փրփրում,—
Այդ գարունն է նորից-նոր
Կանաչ երգերն իր գրում...
Դուք էլ կյանքում թռիչքի՛
Տենչով ապրեք, մանուկնե՛ր,
Բուրող ամեն մի ծաղկի
Կանչո՛վ ապրեք, մանուկնե՛ր,
Կյանքը՝ ճրագ, շո՛ղ բերեք
Այդ ճրագին, մանուկնե՛ր,—
Ո՛չ ցրտերից վախեցեք,
Ո՛չ կրակից, մանուկնե՛ր...
Փառք ու պատվի ճամփեքով
Դուք գնացե՛ք, մանուկնե՛ր,
Ինչ ճամփա մենք չենք բացել,
Դո՛ւք բացեք, ի՛մ մանուկներ:



*Թարգմ. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*




*Ճանապարհի երկու կողմերում անուշաբույր դեղձենիներ էին, խնձորենիներ, խաղողի թփեր, սեխ ու Արարատյան դաշտին հատուկ այլ բարիքներ: Աշունն իր ստեղծած մրգերի առատությունից ասես շնչահեղձ էր լինում և խնդրում անցորդներին՝ թեթևացնել իր բեռը, համտես անել թփի տակից գաղտագողի ժպտացող խաղողից, ճյուղերը գետին խոնարհած դեղձենու դեղձից ու գետնաթավալ մեծ-մեծ ձմերուկներից:*

*Շրջապատը այնքան էր հրապուրել մեզ, որ չնկատեցինք, թե ինչպես մեքենան արգելակեց Էջմիածնի շրջանի Գրամփայի միջնակարգ դպրոցի նորակառույց շենքի մոտ:*

*Դպրոցը երեք գյուղերի ճիշտ մեջտեղն է կառուցված: Մուղանի, Ծաղկունքի և Գրամփայի երեխաները հավասարապես իրենցն են համարում այն և հավասարապես աշխատում են դպրոցամերձ հողամասում ու արտադրական բրիգադում: Ամռան ամիսներին բնասերների խմբակի անդամներից շատերը գերադասեցին գյուղում մնալ և փոխնիփոխ հսկել, խնամել դպրոցամերձ այգին ու բանջարանոցը:*

*Դպրոցամերձ հողամասը օգնեց լավ յուրացնել բուսաբանության թեմաները, իսկ դպրոցին էլ տնտեսական մեծ եկամուտ տվեց: Հողամասն ընդամենը մեկ հեկտար է: Այդ փոքր հողակտորը այնքան խնամքով են օգտագործել և այնքան խնայողաբար, որ ոչ մի թիզ հող ազատ չի մնացել: Կանոնավոր շարքերով տնկված խնձորի, դեղձի, սալորի, ծիրանի և այլ մրգատու ծառերից մեկ տոննայից ավելի պտուղ հավաքեցին:*

*Ամենաշատ բերքն ստացվեց բանջարեղենից: Պատանի բնասերները դպրոցի դիրեկտոր ընկեր Վարդան Սարգսյանից առանձին հողամաս էին խնդրել: Այդ հողամասում նրանք ուզում էին վարունգ ցանել:*

*— Դուք, ինչ է, որոշել եք ամբողջ հողամասում վարո՞ւնգ ցանել,— հարցրել էր դիրեկտորը:*

*Երեխաները ստիպված էին եղել գաղտնիքը բացել, ասել, որ ուզում են երկու բերք ստանալ իրենց հողամասից: Դիրեկտորը պահեց նրանց գաղտնիքը, դպրոցում այդ մասին ոչինչ չիմացան, մինչև վարունգի առաջին բերքը լրիվ վաճառվեց ու սկսեցին հողակտորը դարձյալ նորից մշակել: Այնուհետև լոբու սերմեր ցանեցին, առատ բերքից ստացված գումարը դարձյալ դպրոցի գանձարանը մտավ: Չմոռանանք ասել, որ իրենց թափած ջանքերով աչքի էին ընկնում մանավանդ Ռուզաննան, Արագին, Աշոտն ու Նազիկը:*

*Պատանի բնասերների այս մտահղացումը, որ հաջողությամբ իրականացվեց, նվիրված էր ՍՍՀՄ կազ-*




մավորման 50-ամյա հոբելյանին: Ստացված եկամուտով դպրոցը լավ ու հետաքրքիր միջոցառումներ և էքսկուրսիաներ կազմակերպեց:

Գրամփայի դպրոցականները Էջմիածնի շրջանում և հանրապետությունում հայտնի են ոչ միայն վերը հիշված գործով: Նրանք առաջիններից էին, որ կոչ արեցին ծառապատել և խնամել միջգյուղային ճանապարհները՝ գյուղը գյուղին կապել կանաչ գոտիներով: Նրանք արդեն սկսել են ծառապատել իրենց երեք գյուղերը իրար հետ կապող ճանապարհները: Դեկորատիվ, անպտուղ ծառերի փոխարեն աճեցրել են 250 պտղատու տնկիներ:

Աշունը դպրոցականներին հյուր եկավ իր բոլոր գույներով ու հրաշագեղ երանգներով: Եթե պատանի բնասերներն իրենց այգում եղած պտղատու ծառատեսակներից որևէ մեկը չունենային, ապա անպայման աշնան մի գույնը, մի երանգը կպակասեր: Նրանց այգին այժմ այնքան է գեղեցկացրել շրջապատը, որ դարձել է Էջմիածնի շրջանի տեսարժան վայրերից մեկը:

Քիչ զբոսաշրջիկներ չեն հիացել պատանի բնասերների այգով, որն ընդամենը հինգ տարեկան է, և դեռ շատերը նրանով հիանալու առիթ կունենան:

# ՄՐՑՈՒՄ ԷԻՆ ՊԱՏԱՆԻ ՏՈՒՐԻՍՏՆԵՐԸ

Վերևում կապուտաչ երկինքն էր, ներքևում՝ քարերի հետ կռիվ տվող ծփացող-ճչացող Վեդի ու Պարզ ջուր գետերը, շուրջ բոլորը՝ քարացած-քարակոփ լեռներ, իսկ այդ ընդարձակ ձագարի հատակին, իրար նման, իրար մոտ տեղադրված Վեդու շրջանի 13-րդ հավաքի մասնակից պատանի տուրիստների գույնզգույն վրանները:

Նրանք որոշել էին այստեղ անցկացնել տուրիստական հավաքը: Առաջին հոգսն ու հոգնությունը վրաններ դնելն էր: Ճիշտ է ,այն ոչ մի կապ չուներ մրցության պայմանների հետ, բայց պատանիները այդ հնարավորությունն օգտագործում էին մի վերջին անգամ իրենց ուժերը ստուգելու համար: Եվ մեկ-երկու րոպեի ընթացքում կարգ-կարգ շարվեցին «Ջախ», «Եղնիկ», «Ծիածան», «Նաիրի» և այլ անվանումներ կրող ջոկատների վրանները:

Դպրոցականները զբաղվեցին շրջապատի, վրանների, իրերի կարգավորմամբ ու զանազան խաղերով, իսկ ջոկատների ղեկավարները հավաքի ժյուրիին ներկայացրին անցած հավաքից հետո պատանի տուրիստների կատարած գործերը: Շարք-շարք դրված ձեռագիր

*Ի պատիվ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի*

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



տետրերը, ալբոմները, կնքված երթուղային քարտեզները, նրանց կատարած աշխատանքների վկայությունները են: Դրանց մեջ կարելի է գտնել այն ամենը, ինչ կանոնագրքով պահանջվում է դպրոցական տուրիստներից: Յուրաքանչյուր աշխատանք գնահատվում է սահմանված միավորներով:

Վեդու №1 դպրոցի ջոկատի անվան դիմաց միավորները անհամեմատ շատ են գումարվում: Ճիշտ է, մյուսներն էլ նրանց նման, գյուղի, դպրոցի, նշանավոր մարդկանց, դրուժինաների, ջոկատների ու հանրապետության պատմությունն են գրել, հայրերի հետքերով գնացել, բայց առաջին դպրոցի սաները արշավներ շատ են կազմակերպել: Մյուսներից մոտ հազար միավոր ավել են հավաքում: Նորից են դիմում երթուղային քարտեզներին ու կանոնագրքին, բայց միավորները անփոփոխ են մնում:

— Սա դեռ բոլորը չէ,— կարծես ժյուրիի ու ներկաների տարակուսանքը փարատելու համար ասում է խմբակի ղեկավար Վազգեն Ղազարյանը,— երեկոյան կցուցադրենք նաև մեր նկարահանած կինոժապավենը:

Երեկոն երկար սպասեցնել չի տալիս: Մայրամուտ իջնող արևի հետ թանձր ամպերը ծածկում են ձագարից երևացող մի բուռ երկինքը և շրջապատը շղարշվում է խավարով:

Սարալանջին հուրհրում է ՍՍՀՄ կազմավորման հոբելյանական տարեդարձը խորհրդանշող «50»-ը, իսկ ստորոտում՝ մի մեծ, ամեհի խարույկ:

Խարույկի շուրջը հավաքված ջոկատներն իրենց երգն են բերում: Պիոներականի հետ հնչում են տուրիստներին ու ճամփորդներին ուղեկից երգերը: Լավ կատարողները իրենց ջոկատներին նոր միավորներ են բերում:

Վերջում առաջին ջոկատը ցուցադրում է խոստացած կինոժապավենը: Ճանապարհը սկսում է Վեդուց ու կտրում անցնում է Գառնի, Գեղարդ, Դիլիջան, Իջևան, Արագած և, շրջանը բոլորած, նորից մտնում շրջկենտրոն: Ջոկատի անդամներ Սամվելը, Ռաֆիկը, երկու Արևիկներն ու մյուսները սոսկ հետաքրքրության համար չէ, որ այդքան երկար ճանապարհներ են անցել ոտքով: Պատմական հուշարձաններ պատկերող տեսարաններում նրանք վանքերի, եկեղեցիների ու բերդերի բակերն են կարգավորում, հողով ծածկված զարդաքանդակները մաքրում, պարիսպներից վայր ընկած քարերը տեղադրում:

Ուրախ երեկոն եզրափակվում է անսպասելի տեղացող հորդ անձրևով: Լեռների կատարներին փշրվող շանթերի որոտից ձորերը լցվում են անասելի դղրդյուններով: Տեղատարափ անձրևը անաչառ ժյուրիի նման պատժում է նրանց, ովքեր ճիշտ տեղ չեն ընտ-





# ՏԱՋԻԿԱԿԱՆ ՍՍՀ

**Սովետական Միության կազմավորման հիսնամյակը բարի գործերով են դիմավորում Տաջիկստանի պիոներները։ Բարձր-լեռնային արոտավայրերում և արգելանոց-անտառներում, բամբակի ընդարձակ դաշտերում և ծաղկող այգիներում աշխատում են հետաքրքրասեր ու եռանդուն երեխաները։ Ստեղծում են նոր անտառներ ու զբոսայգիներ, բամբակի աշակերտական պլանտացիաներ, կանաչապատում են գյուղեր ու քաղաքներ։**

**Արևոտ հանրապետության պատանեկությունը միշտ երթի մեջ է։**

## ԿԻՏՐՈՆԻ ԾԱՌԵՐ՝ ԽՐԱՄԻ ՄԵՋ

Ճանապարհը անցնում է լեռնանցքով։ Երբեմն լեռներն այնքան են մոտենում խճուղուն, որ ցանկություն է առաջանում ձեռք տալ նրանց խորդուբորդ պատերին, որոնք տեղ-տեղ ծածկված են. ծիծեռնակի բներ կան այդտեղ։ Գարնանը բլուրները ասես հրդեհվում են վարդկակաչներով, բայց այժմ խոտը դեղնած է։ Շոգ է։ Լեռները հանկարծակի վերջանում են, և ճանապարհը բոլոր կողմերից երիզվում է դաշտերով։

Ահա և Կուրգան-Տյուբինի շրջանի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության № 13 դպրոցը։ Տասը տարի է, ինչ այս դպրոցի աշակերտները կիտրոն են աճեցնում։ Աճեցնում են շատ անսովոր ձևով՝ խրամի մեջ։ Կիտրոնները նույնպես զարմանալի են. նարնջի չափ խոշոր են, բարակ կեղև ունեն և շատ համով են։ Կիտրոնի այգու տերերը բարձր դասարանցիներն են։ Կլոր տարին նրանք խնամում են ծառերը։ Իսկ աշխատանք շատ կա, և ամեն ինչ պետք է անել ժամանակին։ Պետք է չորս անգամ փխրեցնել հողը, ինն անգամ ջրել ծառերը։ Այդ նպատակով խրամի մեջտեղը և եզրերին փորված են առվակի հուներ։ Ծառերը խմում են ջուրը, կանաչ տերևների սոսափյունով ասես շնորհակալություն հայտնում երեխաներին, իսկ մրգերը կամաց-կամաց լցվում են արևահամ հյութերով։

Ի՞նչ կարիք կա ծառերը թաքցնել խրամի մեջ։ Մի՞թե Տաջիկստանում քիչ արև կա։ Ոչ, արևը այստեղ շատ-շատ է, բայց ձմեռը հաճախ խիստ է լինում։ Այդ պատճառով էլ ձմռան ցրտերից ծառերը պաշտպանելու համար՝ հարավային կողմը արգելափակում են շրջանակներով, ինչպես ջերմոցներում, իսկ հյուսիսային կողմում օգտագործում են կավով ծածկված վահաններ։

Սկզբում երեխաների տնտեսությունը փոքր էր՝ միայն մի խրամ կար։ Բայց արդեն հինգերորդ տարին է, ինչ տաջիկ դպրոցականները կիտրոնի բերք են հավաքում երկրորդ խրամի տաս-

---

*րել կամ վատ են ամրացրել վրանները։ Օգնության է հասնում ԴՕՍԱՖ-ի շրջանային կոմիտեի նախագահ Գերասիմ Համբարձումյանը, տեղավորում իր մեքենայում և խոժոռված նայում գետերին.*

*— Հանկարծ չհեղեղի։*

*Տուժածները այդպես էլ չեն մասնակցում առավոտյան կազմակերպվող տուրիստական մրցումներին։*

*Մռայլ գիշերվան հաջորդում է պայծառ, արևոտ առավոտը։ Սկսվում է միավորներ շահելու վերջին ու ամենամեծ հնարավորությունը։*

*Հավաքի ղեկավար Եղիազար Ջարոյանի սուլոցից հետո բոլոր ջոկատները շարվում են հրապարակում։ Մրցությանը մասնակցելու համար նրանք պետք է կարողանան լավ օգտվել տուրիստական պարկերից ու վրաններից, արագ հաղթահարեն դժվարամատչելի երթուղին, այնուհետև ամենակարճ ժամանակամիջոցում կանգնեցնեն վրանները։*

*Բոլորը ձգտում են լինել առաջինը, սակայն հաղթողի դափնուն արժանանում է Ղալարի միջնակարգ դպրոցի տուրիստական ջոկատը։ Իսկ հավաքի ընդհանուր արդյունքները ամփոփելիս, պարզվում է, որ միջնակարգ դպրոցների մեջ հանրապետության 1971 թվականի չեմպիոն՝ Վեդու №1 դպրոցի սաները մեծ առավելությամբ գրավել են առաջին տեղը։*

*Վերջում լավագույն արդյունքի հասած ջոկատներին ու առանձին տուրիստների պարգևատրում են շրջանի կոմերիտական կազմակերպության պատվոգրերով և, հավաքի դրոշն իջեցնելուց հետո, բռնում տունդարձի ճամփան։*

*ՎԱՀԱՆ ՄԻԽԱԿՅԱՆ*

նինը ծառերից: Առաջին տարում մի ծառից հավաքել են քանինի մինչև քառասուն կիտրոն, իսկ երկրորդ տարում՝ հարյուր հիսուն: Անցյալ տարի պատանի բնասերների բերքը կազմեց երկուսուկես հազար կիտրոն, իսկ այս տարի նրանք ցանկանում են այդ թիվը հասցնել մինչև չորս հազարի:

## ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՈՎ

Արևից դանդաղորեն հալչում են սառցադաշտերի լեզվակները: Կաթիլները հավաքվելով՝ դառնում են առվակներ, իսկ սրանք իրար միանալով՝ գետակներ են կազմում: Նրանցից մեկը՝ Ղարադաղը հոսում է Ռեգար քաղաքի մոտով: Սրընթաց իջնելով հյուսիսային լեռնանցքից՝ նրա ջուրը չի հասցնում տաքանալ: Նույնիսկ հուլիսյան շոգ կեսօրին քչերն են համարձակվում լողանալ Ղարադաղում: Կառուցվել են ջրանցքներ, որոնց մեջ գետի ջուրը դանդաղեցնում է վազքը և հանդարտ հոսելով՝ ոռոգում բերրի դաշտերը: Եթե չլինեն այդ ոռոգիչ ջրանցքները, ողջ բուսականությունը կչորանա: Կչորանա և բամբակը՝ Տաջիկստանի ամենակարևոր հարստությունը:

Ռեգարի № 8 դպրոցում կա արտադրական բրիգադ, որը ղեկավարում է Բոզոր Բոյմոտովը: 27 աշակերտ Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսությունում բամբակ են մշակում: Նրանք բամբակի մասին այնպիսի հպարտությամբ են խոսում, ինչպես կուբանցիները՝ հացահատիկի, բելոռուսները՝ վուշի, ուկրաինացիները՝ շաքարի ճակնդեղի: Ապագա բերքի հիմքը դրվում է դեռևս աշնանը: Բամբակը հավաքելուց հետո աշնանավար են անում: Սերմերը ցանում են, երբ հերկը տաքանում է: Եթե շուտ ցանեն՝ սերմերը կփչանան: Բամբակը սիրում է տաքություն և ջուր, փխրեցված և պարարտացված հող: Ձմռանը անպայման պետք է դաշտը ջրել, որպեսզի բերքը առատ լինի:

Գյուղատնտեսական ինստիտուտի գիտնականների առաջադրանքով, երեխաները որոշեցին բամբակի դաշտում օգտագործել արհեստական պարարտանյութ: Ընտրեցին բամբակի 195-ֆ տեսակը: Այն համեմատաբար արագ է աճում, քմահաճ չէ, դժվար է հիվանդանում: Բրիգադը հեկտարից մոտ 40 ցենտներ բամբակ ստացավ: Փորձը հաջող էր: Ֆոսֆորը և ազոտը տեղական պարարտանյութերի հետ օգտագործելու դեպքում, բավականին բարձրացնում են բերքատվությունը: Ամառվա կեսին բացվեցին առաջին կոնգուղները, իսկ հետո՝ մնացածները... Արևի տակ կայծկլտաց բամբակը՝ «սպիտակ ոսկին», որը աճեցրել էին շնորհալի տաջիկ դպրոցականները:

## ՔԱՂԱՔ-ԱՅԳԻ

Ինքնաթիռից նայելիս թվում է, թե Դուշանբեն թաղված է կանաչի մեջ: Գորշ կանաչավուն հաստ բներով և գնդաձև մանր պտուղներով բարձր բարդիները հեռվից նմանվում են կաղնիների: Սրածայր նիզակների նման վեր են խոյացել կիպարիսները: Մատներփշերով երկար ձեռքերն են տարածել միջերկրածովյան սոճիները:

Քաղաքը առանձնապես գեղեցիկ է գարնան սպիտակավարդագույն գունավորման մեջ, երբ ակացիաները զուգված են ծաղիկների ձյունաթույր ողկույզներով, իսկ ծիրանիների դեռևս մերկ ճյուղերը հագնում են մանուշակագույն-կարմրավուն հագուստներ:

Փողոցները ուղիղ են, խնամքով խուզված են մարգերը: Ամենուր ծաղկում են վարդերը՝ ապրիլից մինչև հունվար բուրմունք տարածելով: Գեղեցիկ է Դուշանբեն, և բնակիչները շատ են սիրում իրենց մայրաքաղաքը:

Շատ փառավոր էջեր են գրել Դուշանբեի աշակերտները իրենց հանրապետության պիոներական կազմակերպության տարեգրության մեջ: Քաղաքում լայն տարածում է գտել կանաչ պարեկների շարժումը: № 58 դպրոցի մոտ խշշում է Վոլոդյա Ուլյանովի անվան մրգատու այգին, որտեղ ավելի քան 500 ծառ կա: Այդպիսի այգի ունի նաև № 25 դպրոցը: Այստեղ աճում են թզենին ու նռնենին, բարդին ու խնձորենին, սոճին ու սիրիական վարդը: Մոտ հազար դեկորատիվ ծառ, ավելի քան 500 թուփ և 2000 տարբեր տեսակի ծաղիկներ. սա միայն Հոկտեմբերյան շրջանի դպրոցականների ավանդն է Դուշանբեի կանաչապատման գործում:

---

## ՄՆԱՑԻ ԲՈԼՈՐՈՎԻՆ ՈՐԲ

**«Երկրորդ կյանք» գրքից**

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

**1915 թվականը:**

**Նոր տարի:**

**— Հայ ազգի սև տարին,— ասում էին խառնակոնիսցիք:**

**Ես կարմրուկ հանեցի և պառկեցի մի ամբողջ ամիս: Թշնամիս կարմրուկ չհանի տասնչորս տարեկան հասակում:**

**Երբ առողջացա, արդեն բոլորովին ուժասպառ էի: Մենք մի ջրի կուժ ունեինք, որ ես դեռ տասը տարեկան հասակում լցնում էի ու գցում շալակս: Հիվանդությունից հետո, երբ արդեն լրացել էր իմ տասնչորս տարին, այդ կուժն այլևս չէի կարող գետնից բարձրացնել:**

**Իմ հիվանդությունն ուժասպառ արեց ոչ միայն ինձ, այլև մորս: Հիվանդ պահելու չարչարանքից և ինձ կորցնելու վախից մայրս այնքան էր հյուծվել, որ մեծ ուրախությամբ կընկներ անկողին, եթե միայն երկու որբ խնամող աղքատ մայրը իրավունք ունենար անկողին ընկնելու:**



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մեր Ծուռ Սալաթը ծնել էր, և հորաքույր Ալմաստը զբաղված էր նորածին հորթը խնամելով: Ձմեռվա ցուրտ առավոտ էր: Մայրս ինձ խնդրեց, որ կուժն առնեմ գնամ աղբյուր ջրի:

— Ես կուժն այլևս չեմ կարող գետնից բարձրացնել, մա՛,— պատասխանեցի ես վշտալի եղանակով:— Ուզո՞ւմ ես կիսատ լցնեմ, բերեմ:

— Վա՜խ, իմ աչքե՜րը կուրանան,— ասաց մայրս:— Դու տնից դուրս մի՛ գա: Ես կերթամ ջրի:

Եվ կուժը վերցրեց ու գնաց:

Թերևս ես իմ կատարած ոչ մի սխալի համար այդքան չեմ զղջացել, որքան նրա համար, որ թույլ տվի մորս դուրս գալ տնից այդքան ցուրտ մի առավոտ: Ինչո՞ւ ես ասացի՝ «Կուժն այլևս չեմ կարող գետնից բարձրացնել»... Ինչո՞ւ ասացի՝ «Կիսատ լցնեմ»: Չէ՞ որ ես կարող էի կուժը կիսատ լցնել առանց այդ մասին մորս նախապես ասելու: Այն ժամանակ նա հիվանդ-հիվանդ աղբյուր չէր գնա:

Մայրս աղբյուրից վերադարձավ, կուժը վայր դրեց և ընկավ անկողին:

Ես կյանքումս իմ կատարած ոչ մի սխալից այդքան չեմ տուժել...

Գերեզմանոցում ես բարձրաձայն լաց էի լինում: Տարօրինակ բան. ես լաց էի լինում ոչ միայն ինձ

համար, այլև ուրիշների համար: Ես ուզում էի, որ ուրիշները տեսնեն, թե ինչպես եմ ես ողբում մորս մահը: Ինչո՞ւ էր դա ինձ հարկավոր: Չէ՞ որ իմ վիշտը առանց այն էլ չափից ավելի մեծ էր, և բոլորն էլ տեսնում էին, որ մորս մահով ես ու քույրս դարձանք լիովին որբ, աղքատ ու որբ երեխաներ: Ուրեմն ի՞նչն էր ինձ մղում ցուցադրել իմ վիշտը: Կարո՞ղ էր դա լինել ինչ-որ փառամոլություն, իբր, տեսեք, թե ինչքա՞ն մեծ է իմ կորուստը և ինչպես ողբալ գիտեմ ես: Թե՞ դա ինքնապաշտպանության բնազդն էր, իբր, տեսեք, ես այս տարիքում կորցրի մորս, միակ հենարանս աշխարհում, խղճացեք և օգնեցեք ինձ:

Համենայն դեպս իմ բարձրաձայն ողբի մեջ ինչ-որ ցուցադրական շեշտ կար, և դա դառնացնում էր իմ առանց այն էլ դառնացած հոգին:

Ես բարձրաձայն ողբում էի մորս մահը և միաժամանակ մտքումս պատկերացնում էի այն վիճակը, որ ստեղծվել էր ինձ համար: Ես հաճախ էի հիվանդանում սանջու կոչված փորացավով, և ինձ բուժում էր մայրս: Միայն մորս էր հայտնի իմ սանջուն արագ բուժելու գաղտնիքը... Մորս թարմ գերեզմանի վրա ես մտածում էի. սրանից հետո ինձ ո՞վ կբուժի, երբ ես հիվանդանամ: Այս մտքից ես ամաչում էի և ինքս իմ աչքին նսեմանում: Բայց այդ մասին չմտածել չէի կարողանում:

Ես տասնչորս տարեկան էի, քույրս՝ Երանուհին տասը տարեկան: Երբ ես լաց էի լինում, նա էլ էր լաց լինում, երբ հանգստանում էի, նա էլ էր հանգստանում: Ես պարզ տեսնում էի, որ Երանուհին իմ մեջ հենարան է տեսնում և ինքն իրեն չի զգում այնքան էլ անօգնական որբ: Դրանից իմ գլխում առաջացավ մի ուրիշ միտք. եթե մարդ պետք է կորցնի ծնողներին, ապա ավելի լավ է կորցնի մինչև տասը տարեկան հասակը, երբ նա դեռ փոքր է և չի պատկերացնում կորուստի մեծությունը, կամ՝ քսան տարեկանից հետո, երբ արդեն մեծացել, դարձել է Հովոյի նման ինքնուրույն մարդ և ծնողների օգնության այնքան մեծ կարիք չունի:

Սոսկալի է ծնողներին կորցնել տասից մինչև քսան տարեկան հասակում, երբ իրար են միանում կորստի գիտակցությունն ու անօգնականության զգացմունքը: Ես հորս կորցրի, երբ տասներկու տարեկան էի, մորս կորցրի տասնչորս տարեկան հասակում:

Երբ գերեզմանոցից տուն վերադարձանք, հորաքույր Ալմաստը ինձ ու Երանուհուն գրկեց, կրծքին սեղմեց, ասաց.

— Իմ ո՜րբ ձագուկներ, ես մնացի ձեր պաշտպանը:

Մեր տանն էին նաև մորաքույր Ոսկոն և մեր բոլոր հարևանուհիները: Մորաքույր Ոսկոն լաց լինելով ասաց.

— Էդպես մի՛ ասի, Ալմո՛ ջան: Բա ես մեռա՞ծ եմ, որ քեզ մենակ թողնեմ իմ քրոջ որբերի հետ:

Հարևանուհիները նույնպես խոստացան մեզ մայրություն անել:

Այդ խոսակցությունները իմ մեջ ավելի բորբոքեցին իմ որբության գիտակցությունը: Ես խեղդվում էի վշտից:

Կատարված էր իմ նկատմամբ ամենամեծ անարդարությունը: Բայց ես ո՞ւմ դիմեի, ո՞ր ատյանում բողոքեի: Աստծուց ես չունեի ոչ մի պահանջ, որովհետև այլևս չէի հավատում նրա գոյությանը:

Աղտաշցու Քյալաշ-մաման, իր սեփական կորուստները մոռացած, համակված իմ վշտով, ամեն առավոտ բակում կանգնած կռիվ էր տալիս աստծու հետ.

— Ինչո՞ւ ես անօգնական ձագուկների մորն ալ տարար, անկուշտ աստված, անգութ աստված, անօրեն աստված:

Քյալաշ-մաման աստծուն անիծելով իր սիրտը հովացնում էր: Իսկ ես ո՞ւմ անիծեի: Ես արդեն գաղափար ունեի տիեզերքի կազմության մասին և գիտեի, որ աստված այնտեղ բնակություն հաստատել չի կարող: Ես մոլորվել էի այն անաստված և անտեր աշխարհում:

Մորաքույր Ոսկոն մի քանի օր հետո ինձ ու Երանուհուն տարավ իր տունը կերակրելու և մխիթարելու համար: Նրա ամուսնու՝ Սողոյի աչքերում ես կարեկցության ոչ մի նշույլ չտեսա: Ընդհակառակը, նա իր չոր ու չար հայացքով կարծես ասում էր. «Սրանք ինչո՞ւ են իմ հացն ուտում... ինձ ի՞նչ, որ սրանց մայրը մեռել է»...

Կարծես ի հեճուկս իր ամուսնու, մորաքույր Ոսկոն սուփրայի վրա դրեց նոր կարագի գունդ, ինձ, Երանուհուն, իր Անտոնին, Թագուհուն ու Քրիստինեին հորդորեց, որ կուշտ ուտենք: Մեկ է, մենք չուտենք, թուրքերը կուտեն...

Անտոնը մորաքրոջս միակ որդին էր, ինձնից հինգ տարով մեծ, միամիտ, առատաձեռն պատանի, հոր հակապատկերը և «պատիժը»: Ինքը՝ քեռի Սողոն էր իր որդուն այդպես անվանում, որովհետև Անտոնն իր ունեցած վերջին պատառը կիսում էր ընկերների հետ:

Հաց ուտելուց հետո մորաքույր Ոսկոն մի վերմակ փռեց և սկսեց երեսը կարել:

— Անտոնիս վերմակն է,— ասաց նա պարծանքով:

— Ես այլևս մեր չունեմ, որ ինձ համար վերմակի երես կարի,— ասացի ես տխուր հեգնությամբ:

# ՀԱՆԵԼՈՒԿԱՅԻՆ ՀԱՐՄԱՐՎԱԾՈՒԹՅՈՒՆ

Զարգացման միլիոնավոր տարիների ընթացքում բույսերը և կենդանիները հարմարվել են ոչ միայն արտաքին միջավայրի պայմաններին, այլև հաճախ մեկը մյուսին, ընդ որում այդ հարմարվածությունը այն աստիճան անհրաժեշտություն է դարձել, որ երբեմն նրանց անհնար է անջատել իրարից, քանի որ հանդես են գալիս որպես մի միասնական օրգանիզմ: Այս երևույթը գիտությանը հայտնի է համակեցություն, սիմբիոզ անվանմամբ, որը կենսական աշխարհի ամենահետաքրքիր ու հանելուկային երևույթներից է: Սիմբիոզը համակեցության մեջ մտած կենդանիներին ու բույսերին հնարավորություն է տալիս հաղթող դուրս գալ գոյության կռվում և ավելի լավ հարմարվել արտաքին միջավայրի դաժան պայմաններին:

Բույսը և կենդանիները փոխադարձաբար կապված են մեկը մյուսին: Երբեմն մեկի գոյությունը առանց մյուսի անհնարին է պատկերացնել, եթե ընդհանրապես հաշվի չառնենք, որ կենդանիներն առհասարակ ի վիճակի չեն ապրելու առանց բույսերի: Բույսերն էլ իրենց հերթին շատ դեպքերում անկարող են պահպանել իրենց գոյությունը առանց կենդանիների: Բոլորին քաջ հայտնի է, որ կենդանիները հատկապես միջատները, օժանդակում են բույսի ծաղիկների փոշոտմանը, տարածում սերմերն ու պտուղները, երբեմն էլ որպես կեր ծառայում միջատակեր բույսերի համար:

Արևադարձային երկրներում հանդիպում է մի շատ հետաքրքիր բույս՝ միրմեկոդիան: Դա բույս մրջնանոց է, որը որպես էպիֆիտ (բույս, որը ապրում է այլ բույսերի վրա), ամրանում է խոշոր ծառերի բնին: Միրմեկոդիայի ցողունի ստորին մասը խիստ լայնացած է և նմանվում է սոխի, որը ամբողջովին ծածկված է բազմաթիվ անցքերով իրար միացած խողովակներով, որոնց մեջ ապրում են մրջյունները: Այդ խողովակները ոչ թե մրջյուններն են փորել, այլ առաջացել են էվոլյուցիոն զարգացման ընթացքում: Նշանակում է, միջատները բույսերից ստանում են պատրաստի բնակարան՝ մրջնանոց, միաժամանակ իրենք էլ մեծ ծառայություն են մատուցում բույսերին: Ո՞րն է այդ ծառայությունը:

Ահա՛ թե որը. արևադարձային անտառներում վխտում են բազմաթիվ տերևակեր մրջյուններ, որոնք հսկայական վնաս են պատճառում բույսերին: Միրմեկոդիայի վրա ապրող մրջյունները այդ վնասատու մրջյունների ոխերիմ թշնամին են, թույլ չեն տալիս դրանց կրծելու ոչ միայն միրմեկոդիայի, այլև այն մայր բույսի տերևները, որի վրա ամրացած է միրմեկոդիան: Նշանակում է ,մայր բույսը իր բնի վրա տեղ է տալիս միրմեկոդիային, նրան ապահովում ջրով և հանքային նյութերով, միրմեկոդիան իր հատուկ կառուցվածքի շնորհիվ «բնակարան» է տրամադրում օգտակար մրջյուններին, իսկ մրջյուններն էլ իրենց հերթին փոխհատուցում են՝ պաշտպանում բույսերին ահեղ ու շատակեր վնասատուներից: Երեք տարբեր օրգանիզմներ սերտ համակեցության մեջ են մտած մեկը մյուսի հետ, որի շնոր-

---

— Վա՜խ, ա՜չքս կուրանա,—մղկտաց մորաքույր Ոսկոն,— էս տարի ոչխարը որ խուզեն, ես քեզ համար էլ, Երանուհու համար էլ վերմակներ կկարեմ: Դու դարդ մի՛ անի, բալա՛ ջան: Մորաքույրդ հո չի՞ մեռել, որ դուք որբ մնաք:

Մարտի առաջին կեսին Խառակոնիսն ապրում էր մղձավանջային օրեր: Ամեն օր մեր սանջակի գյուղերից մարդիկ էին գալիս և հաղորդում, թե իրենց գյուղը կոտորեցին, իրենք հազիվ մազապուրծ փախան:

Ես մոռացել էի մորս մահը և ապրում էի այդ լուրերի ծանրության տակ:

Մեր գյուղում ապրում էր երիտասարդ մի թուրք պաշտոնյա՝ Թեֆֆիկ անունով: Նա հացահատիկի պետական ամբարների վերահսկիչն էր: Մեր գյուղացիները նրան առաջարկում էին գյուղից հեռանալ, գլուխն ազատել հնարավոր վտանգից:

— Չեմ հեռանա,— պատասխանում էր Թեֆֆիկը:— Չեմ ուզում գնալ իմ գազան հայրենակիցների մոտ: Ես անիծում եմ նրանց:

Եվ Թեֆֆիկը հոնգուր-հոնգո՛ւր լաց էր լինում:

Մարտի երկրորդ կեսին Խառակոնիս գաղթեցին այն գյուղերը՝ Արչակը, Սևանը, Աղվերանը և այլն, որտեղ դեռ կոտորած չէր սկսվել: Խառակոնիսցիք նրանց տեղավորեցին իրենց ընտանիքներում և Ծիրինի գլխավորությամբ սկսեցին դիմադրության պատրաստություններ տեսնել: Մեր գյուղում, ինչպես ասում էին այն ժամանակ, հավաքված էր մոտավորապես տասը հազար հոգի: Մենք ունեինք հարյուր հիսուն հրացան, մի այդքան էլ բերել էին արչակցիք, սևանցիք, աղվերանցիք և մյուս գյուղերը: Ուրեմն երեք հարյուր հրացանով մերոնք պետք է պաշտպանեին տաս հազար մարդու կյանք:

— Մի օր ծնվել ենք, մի օր կմեռնենք,— ասում էր Հովոն, ավագ եղբորից իրեն ժառանգություն մնացած «Մոսինը» մաքրելով:

հիվ ապահովվում է նրանց նորմալ գոյությունը:

Կենդանիների և բույսերի համակեցության բազմաթիվ օրինակներ կարելի է բերել: Դրանցից ամենահետաքրքիրը զոոքլորելլայի և ամիոբայի կենսական դաշինքն է: Զոոքլորելլան միաբջիջ ջրիմուռ է. ապրում է ամիոբայի մարմնի ներսում և դրանով պաշտպանվում է թշնամիներից, արտաքին անբարենպաստ պայմաններից: Քանի որ ամիոբան թափանցիկ է, ապա զոոքլորելլան այնտեղ արեգակի լույսի ազդեցության տակ անարգել ֆոտոսինթեզ է կատարում: Կենդանին ջրիմուռից ստանում է ֆոտոսինթեզի շնորհիվ առաջացած նյութերը՝ հիմնականում ածխաջրեր և սնվում դրանով: Բացի այդ, ջրիմուռի պրտազատած թթվածինը ամիոբան օգտագործում է շնչառության համար: Կենդանին էլ իր հերթին ջրիմուռին ապահովում է նրա սննդառության համար անհրաժեշտ ազոտական միացություններով: Պարզ է, թե այս երկու օրգանիզմների համար որքա՜ն ձեռնտու է նման համակեցությունը:

Երբեմն սիմբիոզի երկու մասնակիցն էլ բույսեր են կամ կենդանիներ:

Երկու բույսերի համակեցության ամենազարմանալի օրինակը քարաքոսերն են: Մեզ բոլորիս թվում է, թե քարաքոսը մի միասնական օրգանիզմ է: Սակայն իրականում այն սնկի և ջրիմուռի նպատակահարմար համակեցություն է: Այս համակեցությունը միանգամայն ձեռնտու է և՛ սնկի, և՛ ջրիմուռի համար: Ջրիմուռը սնկից ստանում է իրեն անհրաժեշտ ջուրը՝ նրա մեջ լուծված հանքային սննդարար աղերով և միևնույն ժամանակ պահպանվում է չորանալուց: Սունկը իր հերթին ստանում է ֆոտոսինթեզի արտադրանքներ, քանի որ ինքը զուրկ է քլորոֆիլից՝ կանաչ պիգմենտներից և չի կարող ինքնուրույն ֆոտոսինթեզ կատարել:

Նման փոխօգնությունը այնքան ձեռնտու է քարաքոսին, որ այդ օրգանիզմը աներևակայելիորեն դիմացկուն է դարձել արտաքին ամենաանբարենպաստ պայմանների նկատմամբ: Եվ պատահական չէ, որ քարաքոսերը կարող են պահպանել իրենց գոյությունը աներևակայելի դաժան պայմաններում: Դրանք հաջողությամբ են աճում ավազների մեջ, մերկ ժայռերի վրա, անգամ հախճապակու, երկաթի, փայտի վրա, որտեղ այլ բույսերը երբեք աճել չեն կարող: Քարաքոսերը հանդիպում են ծայրագույն հյուսիսում, ամենաբարձր լեռներում, անտառներում, որտեղ միայն լույս կա: Մթության պայմաններում ջրիմուռը ոչնչանում է, որը իր հերթին հանգեցնում է սնկի մահացմանը:

Էվոլյուցիոն պրոցեսում այս համակեցությունը այնքան էլ խորացել, որ սունկը և ջրիմուռը նույնիսկ բազմանում են միաժամանակ, անմիջապես սիմբիոզի մեջ մտնելով միմյանց հետ:

Սունկը հաճախ համակեցության մեջ է մտնում բարձրակարգ բույսերի՝ խոշոր ծառերի հետ: Նրա բազմաթիվ թելիկները խիտ ցանցի ձևով շրջապատում են ծառերի արմատածայրերը, նրանց մատակարարում ազոտական միացություններ և ծառից ստանում անհրաժեշտ սնունդ:

Սիմբիոզի հետաքրքիր օրինակ է նաև ազոտ ֆիքսող բակտերիաների և բույսերի համակեցությունը: Մի շարք բույսեր (հատկապես լոբազգիներ) իրենց արմատների վրա առաջացնում են պալարներ, որտեղ ապրում են օդից ազոտ սինթեզող պալարաբակտերիաները: Վերջիններս բույսերից սնունդ են ստանում, դրա փոխարեն նրանց ապահովում ազոտական միացություններով: Այս երկու օրգանիզմները ևս մեկը առանց մյուսի գոյություն ունենալ չեն կարող:

Իսկական սիմբիոզը միշտ էլ մուտուալիստական է, այսինքն փոխադարձ շահավետ է երկու կողմի համար էլ: Եթե միայն մեկն է օգտվում, դա կեղծ սիմբիոզ է: Օրինակ, երբ թելոտանի խեցգետինը ամրանում է կետի մեջքին, ի տարբերություն պարազիտների, տիրոջը ոչ մի վնաս չի պատճառում, բացի այն, որ իր մարմնով որոշ չափով մեծացնում է դիմադրությունը, երբ կետը շարժվում է ջրում: Դրա փոխարեն նրանք օգտվում են՝ հնարավորություն են ստանում տեղից-տեղ շարժվելու և սնվելու հանդիպած սնունդով: Նման հարաբերությունը անվանում են կոմմենսալիզմ:

Իսկական սիմբիոզի օրինակներ, երբ համակեցության մեջ մտնողներից երկուսն էլ կենդանիներ են, շատ կարելի է բերել: Դրանցից ամենահետաքրքիրը թունավոր ակտինիայի և ձկնիկ դայիի համակեցությունն է: Վառ գունավորված ձկնիկը, շարժելով մի շարք կենդանիների հետաքրքրությունը, դրանց առաջնորդում է դեպի ակտինիայի մահացու խայթի բջիջները, ինքը հանելուկային կերպով մնալով անվնաս: Շատերը պնդում են, որ ձկնիկը էվոլյուցիոն պրոցեսում իմունիտետ է ձեռք բերել, կրծելով ակտինիայի շոշափուկները և աստիճանաբար «ընտելանալով» նրա թույնին: Էլ ավելի հանելուկային է, երբ փոքրիկ ձկնիկը ղեկավարում է ակտինիայի գործողությունները: Երբ էգը ձկնկիթ է դնում ակտինիայի ստորին մասում, արուն սկսում է այնքան քսվել ակտինիայի մահացու շոշափուկներին, մինչև դրանք թեքվում են մի կողմ, որպեսզի գիշատիչները չկարողանան մոտենալ ձկնկիթին: Ձկները կարող են նաև ակտինիայի շոշափուկները ուղղել դեպի տհեղ գիշատիչը և պատսպարվել դրանց հովանու տակ:

Նման օրինակները ցույց են տալիս, թե որքան բազմազան են օրգանիզմների հարմարողական հատկությունները և թե ինչպես միլիոնավոր տարիների ընթացքում կենսական ձևերը ոչ միայն հարմարվում են արտաքին միջավայրի պայմաններին, այլև կենսաբանական դաշինք են կնքում մեկը մյուսի հետ, փոխադարձ շահավետության ու անվտանգության հիմունքներով:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(Կենսաբանական գիտությունների դոկտոր)

## I. ՀԱՑ ԿՏՐԵԼ

Կենտրոնական Բրազիլիայում կան հնդկական ցեղեր, որոնք չեն քաշվում մերկ ման գալ: Բայց նույն այդ մարդիկ շատ անհարմար կզգան, եթե իրենց տեսնեք... ուտելիս: Ուստի և՛, երբ մեկնումեկը ստիպված է լինում ուտել ուրիշի ներկայությամբ, նա այդ անում է քաշվելով, շուռ եկած ու գլխահակ: Իսկ նա, ով ականատես է դրան, եթե դաստիարակված մարդ է, կանգնում է մեջքով և ետ



չի նայում, մինչև մյուսը չվերջացնի իր հացկերույթը:

Բանից պարզվում է, որ նույն այդ սովորույթը եղել է և կա ուրիշ ժողովուրդների մեջ ևս: Օրինակ, երբ ացտեկների կայսրը նստում էր ճաշի, նրա առաջ ոսկեզօծ վահան էին դնում: Ոչ ոք չպետք է տեսներ, թե կայսրն ինչպես է ուտում: Բացարձակ միայնության մեջ պետք է սընվեին աֆրիկյան շատ առաջնորդներ և Պոլինեզիայի առաջնորդները: Այդ միայնությունը խախտողին մահապատիժ էր սպասում:

**Նման սովորույթից անմիտ ի՞նչ կարող է լինել,— կասենք մենք: Բայց անմիտ է թվում, քանի դեռ չգիտենք, թե ինչ կա դրա տակ թաքնված: Պարզվում է, որ այդ արգելքը կամ տաբուն, կապված է նախնադարյան սնոտիապաշտական պատկերացման հետ:** Ըստ այդ պատկերացման, սնունդը, որ ընդունում է մարդը, դառնում է նույն այդ մարդու մասերից մեկը: Որևէ վնաս հասցնել ուտելիքին, ասենք, կախարդական խոսք ասելու միջոցով, հավասար է մարդուն վնաս հասցնելուն, նրա մարմնի մեջ ուտելիքի հետ հիվանդություն կամ նույնիսկ մահ ներարկելուն:

Ուրեմն, ինչքան քիչ մարդ տեսնի մեկ ուրիշի ուտելը, այնքան լավ: Իսկ ամենից անվտանգը մեն-մենակ, առանց վկաների ուտելն է: Եթե ուտելիքը պետք է բաժանել որևէ մեկի հետ, ապա միայն այնպիսի մարդու, որից չար բան չես սպասում, որին վստահում ես առանց վերապահության: Եվ այսպես, համատեղ հացկերույթը դառնում է արարողություն, որի նշանակությունը դուրս է գալիս քաղց հագեցնելու սահմաններից: Միատեղ ճաշկերույթը փոխադարձ բարեկամության և վստահության նշանակություն է ստանում:

Համատեղ ճաշկերույթն այդ նշանակությունն է ունեցել դեռևս ամենահեռավոր ժամանակներում: Այդ սովորությունը հայտնի էր նաև Ռուսաստանում: Տարեգիրը պատմում է երկու իշխանների՝ Իզյասլավ Մստիսլավիչի և Գլեբ Գեորգիևիչի գժտության մասին, որը մի օր էլ ավարտվում է հաշտությամբ. «Իսկ Գլեբը գլուխ խոնարհեց Իզյասլավի առաջ: Իզյասլավն էլ ճաշի կանչեց նրան, և նրանք միասին ճաշեցին»: Ոչինչ չէր կարող այնպես ամրապնդել ձեռք բերված հաշտությունը, ինչպես միասին սեղան նստելը:

Ճանապարհորդ Յակով Ռեյտենֆելսը, որ 17-րդ դարում եղել է Ռուսաստանում, գրել է, որ ռուսները հնարավոր չեն համարում «սերտ բարեկամությունը, քանի դեռ միասին սեղան չեն նստել և կերել-խմել»: Համատեղ ճաշկերույթը բարեկամության այնպիսի խորհրդանիշ էր դարձել, որ դրանից հրաժարվելը հավասար էր բարեկամությունից հրաժարվելուն: Ահա թե ինչու Արևելքում, երբ հյուրը ինչ-ինչ պատճառով չէր կարող հյուրասիրությանը մասնակից լինել, որպեսզի իրեն սըխալ չհասկանան, մատը թաթախում էր աղամանի մեջ ու լիզում: Այդ նշանակում էր. «Ես հաց եմ կտրել այս տանը, ուստի այս տան բարեկամն եմ»:

Ռուսական հին սովորության համաձայն, երբ հյուրը հաճույքով էր ուտում, դա տանտիրոջ նկատմամբ ունեցած բարեկամության և հարգանքի նշան էր. հակառակ պարագայում ասում էին. «Նա կարգին չի ուտում, չի խմում,-նա չի ուզում մեզ լավություն անել»: Դա համարվում էր թաքնված անբարյացակամության և հակակրանքի նշան:

Մեր ժամանակներում հաճախ ենք կարդում լրագրերում, որ այսինչ քաղաքական գործիչը ճաշկերույթ է տվել ի պատիվ ժամանած պատվիրակության կամ պաշտոնական անձի: Ժամանակակից դիվանագիտական վարվելաձևի այդ գործողության մեջ



շարունակում է գոյատևել իրար հետ հաց կտրելու նույն հինավուրց ծիսակատարությունը:

Ճիշտ է, այն բազմամարդ խըրնջույքներում, որ կազմակերպում էին որոշ տիրակալներ և արքայական անձինք, ճաշկերույթի ա-

# ՄԱՐԴԻԿ ՍԵՂԱՆԻ ՇՈՒՐՋԸ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

վանդական նշանակությանը ավելանում էր և մի ուրիշ երանգ. դա վեր էր ածվում ժողովրդին սիրաշահելու միջոցի: Այն բազմամարդ ճաշկերույթներն ու խրախճանքները, որ տալիս էր Իվան Ահեղը, երբեմն տևում էր վեց ժամ, գրեթե մի լրիվ աշխատանքային օր, ինչպես հիմա կասեինք: Հյուրերի թիվը հասնում էր 600—700 մարդու: Բայց այդ խնջույքները ծանծրալի ու սակավամարդ երևույթներ կարող էին թվալ հետագայում Բորիս Գոդունովի արածների համեմատ: Սրտաբաց հյուրասիրությունը չէր, անշուշտ, որ զբաղեցնում էր Բորիս արքային: Խառը ժամանակներ էին: Աստրա-արհեստավորական դասի և գյուղացիների մեջ պղտոր լուրեր էին պտտվում: Եկեղեցիների գավիթներում աստծո ծառաները, Ռուսիային սպառնացող սով, մահտարաժամ ու հրդեհ էին գուշակում: Եվ թագավորը, տագնապալի կանխագուշակումների ահից, ուշացումով, փորձում է հասարակ մարդկանց սիրտը շահել: Ու թեև դարեր անց հայտնվեց Նապոլեոն անունով մի մարդ, որն ասաց, թե դեպի զինվորի սիրտը տանող ճանապարհը անցնում է նրա ստամոքսի միջով, կարելի է կարծել, թե Բորիս թագավորն ինչ-որ տեղից լսել է այդ խոսքը: Բորիս թագավորը ոռոգում է դեպի ժողովրդի սիրտը տանող ուղին: Սերպուխովոյում, հսկայական վրանների տակ, խրախճանք են անում 10 հազար մարդ: Նրանք քեֆ են անում մեկ օր, երկու օր: Երրորդ օրը հյուրասիրությունը ծայր է առնում նորից: Այդպես շարունակվում է վեց շաբաթ անընդմեջ: Վեց շաբաթ արքան մեղրաջրով ու գարեջրով, շիլայով ու ոչխարի մըսով ջանում է իր կողմը քաշել ժողովրդի սիրտը:

Կարկատած շորերով գյուղացիները, փախստական վանականները, անհայտ ծագման տեր պարապ-սարապ թափառաշրջիկ մարդիկ ուտում-խմում են, հարբում ու երգում, հենց այդտեղ էլ քընում գետնին, վրանների մոտ, որպեսզի արթնանան և նորից սկըսեն ուտոց-խմոցը: Սրատես աչքերով խորամանկ մարդուկները խառնվում էին ամբոխին և թագավորին զեկուցում, թե ժողովուրդը փառաբանում է իրեն ու իր առատաձեռնությունը: Թագավորը հոնքերը կիտած ականջ է դնում: Չի հավատում: Նա բավական ծեր էր ու բավական իմաստուն և լավ գիտեր այդ երախտագիտության գինը:

Ժողովրդին հյուրասիրելու սովորույթը շարունակեց Եկատերինա Երկրորդը: Մի անգամ նա այսպիսի ճաշկերույթ է տվել հրապարակում, պալատի առաջ: Խրախճանք սարքողները զոռ էին տվել իրենց երևակայությանը, որովհետև բավական չէր միայն ժողովրդին կերակրելը, հարկավոր էր տպավորություն թողնել, այնպես անել, որ այդ իրադարձության մասին խոսեին ուրիշ պալատներում: Վաղ առավոտից հրապարակը լցվեց մուրճերի թըխթըխկոցներով: Բանվորները իրականացնում էին պալատական հնարամիտների ծրագրածը՝ արհեստական բլուրներ էին շինում: Այդ բլուրները պետք է կառուցված լինեին թարեքների, հարկերի ձևով, ուր պիտի շարվեին հյուրասիրվելիք ուտեստները: Չորս կողմից շատրվաններ էին ցայտելու՝ կարմիր ու սպիտակ գինու շատրվաններ, գարեջրի ու մեղրաջրի շատրվաններ: Գերմանացի մեխանիկը արդեն քանի օր չարչարվում էր օգնականների հետ, գործի դնելու շատրվանները: Սարքերը վերջնականապես ստուգել ոչ մի կերպ չի հաջողվում, որովհետև գինու շատրվանը խփելուն պես բանվորներն այնպես են խմում-հարբում, որ ստիպված են լինում դադարեցնել աշխատանքները: Հաջորդ օրը կրկնվում է նույնը:



Բայց պալատական հնարամըտության գագաթնակետը ցուլն էր, տապակած ցուլը, որ դրվելու էր բլուրներից մեկի գագաթին: Գանձատունն արդեն բաց էր թողել հինգ հարյուր արծաթ ռուբլի: Այդ դրամներով պետք է լցոնվեր ցուլի գլուխը:

Հյուրասիրության լուրն առել էր ամբոխը և ճաշից դեռ շատ առաջ, խռնվել էր հրապարակի մոտ: Ժողովրդական հրճվանքի բուռն ցույցերը կանխատեսելով, խրախճանք սարքողները հրշեջներ են կանչում: Դա շատ տեղին էր արված: Երբ խրախճանքի ժամանակ «տուրուդմփոց էր ընկնում կամ հրմշտոց», ջրի հզոր շիթը իսկույն վերականգնում էր անդորրն ու խաղաղությունը:

«Ժողովրդին հյուրասիրելու» վերջին փորձերից մեկը Մոսկվայի Խոդինկա դաշտի տխրահռչակ հյուրասիրությունն էր, ուր



հարբած ամբոխի ոտքերի տակ տրորվում, կոտորվում են հարյուրավոր մարդիկ:

Սովորական բոյարների տներում ի պատիվ հյուրի 30—40 ճաշատեսակ էին մատուցում: Իսկ արքայական խնջույքներում, մանավանդ եթե դեսպաններին էին հյուրասիրում, ճաշատեսակների թիվը հասնում էր 100, 150-ի կամ նույնիսկ 200-ի: Ոմն կոմս Կարլիլի պատվին տրված ճաշկերույթի ժամանակ ճաշատեսակների թիվը հասել է 500-ի:

Նման կերուխումների հաջորդ օրը տանտերը անպայման մարդ էր ուղարկում հյուրերի առողջության մասին տեղեկանալու:

13-րդ դարում Ռուսաստանում ճամփորդող մի ֆրանսիացի գրել է, թե ռուսները սովորություն ունեին ճաշկերույթի գնալ հետները պարկ տանելով, որի մեջ լցնում և տուն էին տանում այն, ինչ չէին կարողացել ուտել: Այդ սովորույթը պահպանվել է նաև Իվան Ահեղի օրոք: Երբ հյուրերը ցրվում էին տները, նրանց հետ դնում էին մսով կերակուրներ, կարկանդակներ, քաղցրավենիքով, անուշ բլիթներով, ընկույզով ու չորացրած մրգերով լի զամբյուղներ:

Այսպիսի սովորություն կար նաև Մերձավոր և Հեռավոր Արևելքում: Դեռևս անցյալ դարի Ճապոնիայում հանդիսավոր ճաշկերույթի էին գնում դատարկ զամբյուղներով: Դրանց մեջ դարսում և տուն էին տանում այն ամենը, ինչ ուտել չէին հասցրել:

Երբ այսօր ի սրտե հյուրասիրում եք ձեր սեղանի շուրջ նստած մարդուն, դուք հետևում եք այն բարի ավանդներին, որոնց արմատները հեռավոր անցյալի խորքերն են գնում: Ռուսների առատաձեռնությունը հյուրերի հանդեպ հաճախ են նկատել օտար ճանապարհորդները: Նրանցից մեկը առանձնապես զարմացել է, տեսնելով, որ խնջույքի ժամանակ Ալեքսեյ Միխայլովիչ թագավորը հրամայել է «բոլոր հազվագյուտ և ամենաթանկ ուտելիքները հյուրերին տալ»:

Իհարկե, ինչպես ամեն ինչ, հյուրասիրությունն էլ իր սահմաններն ունի: Բայց և այնպես չպիտի վախենալ հյուրի հանդեպ ավելորդ ուշադրություն հանդես բերելուց: Ինչ էլ լինի, մարդիկ դրանից ավելի քիչ են նեղվում, քան դրա հակառակ վիճակից:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*



ԱԼԻՔ ԽԱՉՈՒՆՑ



Կիրակի օրը ընկեր Արմինեն նրանց տարավ անտառ: Ընկեր Արմինեին շրջապատած գնում էին ու լսում նրա զրույցները՝ ծեր փայտահատի ու նրա աղջկա, որսորդի ու ծուռթաթ արջերի մասին: Ասում էր, որ աղվեսները ամենից ավելի անտառի այն մասում են ապրում, որին գյուղը մոտիկ է: Նրանք գյուղի հավաթառերից հավեր են փախցնում: Եվ զարմանալի խորամանկ են նրանք. հավերի կոկորդից են բռնում, որ չաղմկեն: Գիշերը մի փոքրիկ աղմուկը տարածվում է անտառով ու գյուղով մեկ: Եթե չկարողանան հավերի վզից բռնել ու կանչը խեղդած տանել՝ շատ կտուժեն...

Այսպես նրանք հասան Թթու-ջուր աղբյուրին: Բոլորն էլ ումպ-ումպ ջուր խմեցին: Իսկապես՝ աղբյուրի ջուրը թթու էր. ժողովուրդը անուն դնելիս ե՞րբ է սխալվել:

Հետո նստեցին թևերը լայն փռած մի մեծ հացենու տակ: Ընկեր Արմինեն շարունակում էր պատմել անտառի մասին. անտառը չի ծերանում, միշտ էլ մանուկ է մնում: Պատմում է մեղվի չարչարանքի մասին. ա՛յ այս ծաղկաթերթին նստած մեղուն հոգ-

նած է շատ... այնքան ճանապարհ է անցել մեղուն: Փեթակի դռան մոտ պահակ կա: Մեղուն եթե դատարկ վերադառնա, չեն թողնի, որ ներս մտնի... Ոչ ոք չնկատեց, թե ինչպես Աշոտիկը կամաց-կամաց քաշվեց մի կողմ... քիչ հետո թրխկոց լսվեց: Աշոտիկը գրպանում պարսատիկ էր բերել անտառ, նաև՝ կլոր-կլոր, ընտրովի քարեր: Նա պարսատիկով խփել ու ծառից ցած էր գցել ճնճղուկին: Երեխաները հավաքվեցին ծառի մոտ: Մոտեցավ և ուսուցչուհին: Բոլորն էլ լուռ նայում էին Աշոտիկին և ուսուցչուհուն, սպասելով, որ ուսուցչուհին ծանր խոսքեր կասի Աշոտիկին: Բայց ոչինչ չասաց ուսուցչուհին: Միայն քիչ հետո, երբ ծառի բնի միջից գլուխները հանած ճնճղուկի ձագերը իրենց մոր կորուստն էին լալիս, ուսուցչուհին էլի մի դաս պատմեց, մի կարճ ու հիշվող դաս... որ անտառի ամենալավ թռչունը ճնճղուկն է, որ նա չի լքում անտառը, չի լքում իր բույնը, որ նա ձմռան ցրտերին չի գնում հեռու, չի գնում ոչ մի տեղ, մեզ հետ է մնում ձմռան ցրտերին... ճնճղուկի ձագերը նորից աղմկեցին:

— Որբ մնացին, անօգնական...

Երեխաները նայում էին ուսուցչուհու տխուր դեմքին: Նայում էին և Աշոտիկին: Դասը կիսատ մնաց: Ուսուցչուհին չկարողացավ ավարտել:

Մայրամուտին նրանք վերադարձան գյուղ: Գիշերը բոլոր գիշերների պես անցավ: Հոգնած ու մայր ճնճղուկի մահը տեսած երեխաները քնեցին ու երևի ծանր երազներ տեսան: Աշոտիկը երկար-երկար շուռ ու մուռ էր գալիս անկողնում: Առաջին անգամ նա անքուն գիշեր անցկացրեց:

Իսկ առավոտյան... մի մաքուր տետր տվեց ուսուցչուհուն, որի առաջին էջի վրա գրված էր. «Ինչո՞ւ անտառում չպատժեցիր ինձ: Ինչո՞ւ չապտակեցիր ինձ անտառում: Ամբողջ գիշերը չեմ քնել»:



## ՈՒՇԱԳԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ

### ՉՈՐՐՈՐԴ ՓՈՒԼ

*1. «Մանր ու դանդաղ նրանց ընդառաջ էր գալիս մի ծերունի»: Ո՞վ էր այդ ծերունին և ո՞ւր էր գնում:*

*2. «Ժպտում են նրանք անցորդին...»: Ովքե՞ր են ժպտում և ինչ գիտեք նրանց մասին:*

*3. «Սկզբում դրանց թիվը շատ սահմանափակ է եղել»: Ինչի՞ մասին է խոսքը:*

*4. «Իրենք խռովում են, իրենք հաշտվում»: Ինչո՞ւ: Ո՞վ է այս ստեղծագործության հեղինակը:*

*Պատասխանները ուղարկել մինչև հունվարի 15-ը:*

*Այսպիսով ավարտվում է «Ուշադիր ընթերցողների մրցությունը»: Հաղթողների անունները կտպագրվեն ամսագրի առաջիկա համարներից մեկում:*


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 12 դեկտեմբեր 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ ՆԿ. ԽԱՉԱՏՈՒՐ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղխմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 08871: Պատվեր՝ 1785: Տպաքանակ՝ 73000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 27 XI 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 կ

ԻՆԴԵՔՍ՝ 77806




# ԲԱՌԱԽԱՂ «ՍՍՀՄ-50»

1. Քաղաք՝ Սիբիրում:
2. Էստոնական էպոս:
3. Հռչակավոր դաշնակահար:
4. Առաջին կոմերիտական կազմակերպությունը Հայաստանում:
5. Մարզային կենտրոն՝ Ղազախստանում:
6. Ադրբեջանական գրող, լուսավորիչ:
7. Լատիշ երգահան և երաժշտական քննադատ:
8. Նշանավոր ֆիզիկոս:
9. Ուկրաինացի բանաստեղծուհի:
10. Շրջան՝ Հայաստանում:
11. Տիեզերագնաց, Սովետական Միության կրկնակի հերոս:
12. Ավտոմեքենա:
13. Վրացական էպոսի հերոս:
14. Հայ բանաստեղծ:
15. Հ. Բեկնազարյանի կինոնկարներից:
16. Մոսկվայի «Սպարտակ» թիմի ավագ մարզիչ:
17. Ուզբեկ օպերային երգչուհի:
18. Հանրապետության մայրաքաղաք:
19. Վրացական պար:
20. Օրի վտակներից:
21. Քաղաքացիական պատերազմի հերոս:
22. Հայ գիտնական:
23. ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ:
24. Հայկական էլեկտրոնային հաշվիչ մեքենա:
25. Ուդմուրդական ինքնավար հանրապետության կենտրոնը:
26. Պետական և կուսակցական ականավոր գործիչ:
27. Քաղաք՝ Հյուսիսային Կովկասում:
28. Բելոռուսիայի ժողովրդական բանաստեղծ:
29. Հեղափոխական հածանավ:
30. Բանաստեղծ-երգիչ՝ Ղազախստանում և Կիրգիզիայում:
31. Քաղաք՝ Էստոնիայում:
32. Համամիութենական պիոներական ճամբար:
33. Ռուս նկարիչ:
34. Հայ գրող:

*Կազմեց՝ ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆԸ*